

# ԼԵՆԻՆՆ ԱՆՄԱՀ Է

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

— Հայրի՛կ, ասում են՝ Լենինն անմահ է,
Որ նա տեսնում է մեզ և լսում,
Բայց չէ՞ որ, հայրի՛կ, նա մահացել է,
Ինչո՞ւ են հապա այդպես ասում:
— Լենինը, որդի՛ս, դա քո դպրոցն է,
Դա քո փողոցն է, խաղերը քո,
Քո ճանապարհն է արևազօծ,
Քո մանկությունն է հավերժ երգող:
Լենինը ազատ մեր հայրենիքն է,
Մեր քաղաքներն ու գյուղերը շեն:
Լենինը անամպ, կապույտ երկինքն է.
Եվ ժողովուրդն է աշխարհաշեն:

Խաղաղությունն է Լենինն աշխարհի,
Բարեկամության պատվար ու վեմ.
Նա թշվառների ընկերն է բարի,
Պայքարի կոչը չարերի դեմ:
Մեզ հետ խոսում է նա բերքի լեզվով,
Եվ շչակներով գործարանի,
Ճառագայթումով ատոմի կիսվող,
Եվ հրթիռներով աստղային...
Նա մեզ նայում է լապտերներից
Եվ հնոցներից դոմնաների:
Նա մեզ ժպտում է կրեմլյան աստղերից՝
Տեսնելով սխրանքն այս մեծ դարի:




ՅՈՒՐԻ ՆԱԳԻԲԻՆ

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

Հանգստյան փոքրիկ տունը, որտեղ իր արձակուրդն էր անցկացնում Յուրի Գագարինը, գտնվում էր սարալանջին: Քիչ հեռու վեհորեն բարձրանում էր ֆեոդալական դղյակի նմանվող մեր «Իմպերիալ» առողջարանը:

Մեկ անգամ ես տեսել էի Գագարինին, բայց հետը ծանոթ չէի: Այժմ ծանոթությունը կայացավ, ընդ որում Գագարինին սիրահարված Իրժին աշխատում էր որքան հնարավոր է հանդիսավոր, ջերմ բնույթ տալ դրան: Գագարինը, ձկնորսությունից վերադարձել, քիչ առաջ լոգանք էր ընդունել ու սափրվել էր: Նրա թաց մազերը խիտ-խիտ սեղմված էին գլխին, կլորավուն ու այտերը դիմափոշուց թեթևակի կապտավուն նրանից էին առացել: Նա արտակարգ մաքուր էր, թարմ ու մի քիչ թախծոտ: Այո՛, թախծոտ: Այդ խնկույն զգացվում էր, չնայած գագարինյան հմայիչ ժպիտին (որ թեթև ու հանկարծակի բռնկվում էր նրա դեմքին) ու աչքերի մարդամոտ փայլին: Իրժին առաջարկեց մի թաս գինի խմել, բայց դա էլ չցրեց Գագարինի թախիծը:

Վերջիվերջո աշխույժ և բարի Իրժին չդիմացավ լարվածությանը և ուղղակի հարցրեց.

— Յո՛ւրա, ինչ է պատահել քեզ:

— Դե, ոչինչ...— Գագարինը ժպտաց և, չգիտես ինչու, ձեռքի ափով շփեց ծնոտը:

— Ճիշտ չէ, Յո՛ւրա, դու ինչ-որ բանից վրդովված ես:

— Վրդովվա՞ծ, շատ խիստ է ասված,— առարկեց Գագարինը, և ես զգացի, որ նա ցանկանում է խոսել մեզ հետ հենց նոր եղած մի տհաճ դեպքի մասին:

Այդպես էլ եղավ: Ոչ մեծ, լուսավոր հյուրասենյակում ենք ու առաջ քաշելով և արևահայաց պատուհանից դուրս նայելով, Գագարինը մեկ-երկու անգամ հոգոց քաշեց ու կանգ առավ Իրժիի դիմաց:

— Իվանովին դու գիտե՞ս:

— Իհարկե, գիտեմ,— պատրաստակամորեն արձագանքեց Իրժին:— Լավ տղա է:

— Ես էլ էի այդպես կարծում... Մենք միասին էինք ձկնորսության գնացել: Սատանան գիտի ինչու, իմ տե՞ղն էր լավ, թե՞ բախտս էր բերում, ես մեկը մյուսի ետևից դուրս էի քաշում ձկները, իսկ Իվանովը կարծես անիծված լիներ: Մենք ձուկը բռնում էինք հին կամուրջից այն կողմ, որտեղ մանր ձկներ շատ կան, բայց խոշոր իշխաններ էլ են պատահում: Նրանք տեսանելի են ջրի մեջ: Հատակին կանգնած՝ դիմադրում են ջրի հոսանքին: Ես խղճացի Իվանովին և առաջարկեցի մեր տեղերը փոխել: Փոխեցինք տեղներս և, ես հակառակի նման, սիա այսպիսի գալան դուրս քաշեցի,— Գագարինը լայն տարածեց ձեռքերը, մտածեց ու մի քիչ մոտեցրեց:— Համենայն դեպս ահագին բան էր: Անկեղծորեն ասած, ես կարծեցի, թե չեմ կարող դուրս քաշել: Կարթաձողը կեսից ճկվեց: Իսկ ձուկը լայն էր, կողերը արծաթափայլ էին, մեջքը՝ պուտ-պուտ... Իվանովը կրկին ոչինչ չբռնեց: Մենք նորից տեղներս փոխեցինք և այստեղ նա, ի վերջո, դուրս քաշեց խոշոր մի իշխան: Նա խնկույն պվարթացավ, սկսեց պարծենալ, թե ինձնից էլ շատ ձուկ կբռնի ու երգեց: Հետո խոշոր իշխանը կտրեց նրա կարթի թելը, և Իվանովը ստիպված եղավ նորոգել ձկնորսական սարքը: Երբ նորից կարթը գցեց ջուրը, խայծը ջրի մեջ ընկղմվելուն պես՝ ձուկը խփեց: Իվանովը քաշեց հանեց, բայց ձուկը փոքր էր: Մեզ նախազգուշացրել էին, որ երեսուն սանտիմետրից կարճերը ետ գցենք ջրի մեջ: Եվ հատուկ քանոններ էին տվել ձուկը չափելու համար: Աչքաչափս վատ չէ, ես խնկույն նկատեցի, որ այդ ձկնիկը նորմայից մեկ-երկու սանտիմետրով կարճ է: Իվանովը վերցրեց քանոնը և պգուշորեն, առանց լորձաթաղանթը վնասելու, չափեց ձուկը: Պարզվեց, որ իմ աչքաչափը ճիշտ է: Նա թրջեց ձեռքը, որպեսզի իշխան ձուկը հանի կեռից, բայց երևում էր, որ ոչ մի կերպ չէր ուզում հրաժարվել ավարից: Նա ծուռ-ծուռ նայեց ինձ և նորից քանոնը ձեռքն առավ: Հետո հոգոց հանեց ու կրկին չափեց: Իսկ ես մտքի ասում եմ նրան. «Բա՛ց թող, բա՛ց թող, մա՛րդ եղիր»: Այդ ամենը կարծես դատարկ բան է, թվում է՝ ինչ մեծ բան է, գետակում մի իշխան ավել կամ պակաս, բայց դատարկ բան չէ, եթե լավ մտածենք: Խղճի փոքր կորստից ծնվում են կյանքի չարիքները: Իվանովը, կարելի է ասել, բարոյական փորձարկման էր ենթարկվում: Չէ՞ որ տիեզերանավում մեն-մենակ ես և հեռավոր ես փնտրում հոգուդ խորքում: Իվանովը տանջվում էր, ես էլ նրա համար էի տանջվում, թեև նա այդ բանը չէր զգում: Վերջիվերջո նա կրկին վերաչափեց ձուկը, քանոնը փոքր-ինչ ճկելով, և համոզեց ինքն իրեն, որ իշխանը համապատասխան չափսի է: Նա ընդունեց այդ ինքնախաբեությունն ու ձուկը գցեց դույլի մեջ: Իսկ ես մտածեցի, որ Իվանովը տիեզերագնաց չի դառնա...

Թարգմ. ԱՐԱ ՈՍԿԵՐՉՅԱՆԻ

# ԹՌԻՉՔԸ ՍԿՍՎՈՒՄ Է

ՀԱՅԿ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Մեր դարի սկզբին, երբ դեռ նոր միայն ստեղծվում էր ավիացիոն տեխնիկան, օդանավերը թույլ էին ու պարզունակ: Այն ժամանակ շատերը չէին հավատում, որ կգա ժամանակ, և ինքնաթիռները տեղափոխության հիմնական միջոց կդառնան: Իսկ հիմա նույնիսկ անհնար է պատկերացնել կյանքն առանց ժամանակակից օդանավերի:

Ընդամենը երկու տասնամյակ առաջ էլ հեռավոր ապագայի երազանք էր թվում Երկրի արհեստական արբանյակ ստեղծելը, մարդու կողմից տիեզերք դուրս գալը, դեպի Լուսին և Արեգակի համակարգի մոլորակներ կատարվելիք թռիչքները: Բայց, ինչպես շատ հաճախ է պատահում, ժամանակը մարդկային երևակայությունից առաջ ընկավ: Այսօր արդեն հեռուստատեսային ու հեռախոսային հեռավոր կապն իրականացվում է կապի արբանյակների օգնությամբ, կատարվում է եղանակի ճշգրիտ կանխագուշակում ամբողջ Երկրի մասշտաբով, ճշգրիտ աստղագիտական դիտումներ են կատարվում ուղեծրային լաբորատորիաներից: Եվ մարդիկ ընկլսում են հավատալ վաղվա օրվա միջմոլորակային կանոնավոր ուղերթներին, մշտական ուղեծրային լաբորատորիաների գոյությանը, դեպի հեռավոր աստղեր կատարվելիք երկարատև թռիչքներին...

Լաբորատորիայի պատերին, ուր ես մտա, ինքնաթիռների ու հրթիռների գործող մոդելներ էին փակցված: Կողք-կողքի շարված սավառնակներն ու ռետինե և ներքին այրման շարժիչներով ավելի կատարյալ ինքնաթիռներն ասես թռիչքի էին պատրաստվում: Վառ գույներով ներկված այդ մոդելների մեջ, պատի թերթի ամենավերին մասում, տիեզերական թռիչք կատարած առաջին երկրացու՝ Յուրի Գագարինի լուսանկարն էր...

Հանրապետական ԴՕՍԱԱՖ-ին կից օդագնացության, աստղագիտության և տիեզերագնացության մանկական կենտրոնական դպրոցը գործում է 1969 թվականից: Վաղուց արդեն հանրապետությունում զգացվում էր նման դպրոցի կարիքը, որը կկարողանար աշակերտներին ծանոթացնել թռչելու գաղտնիքներին, օդագնացության ու տիեզերագնացության նպատակներին, և նրանց նախապատրաստեր այդ ուղղություններով մասնագիտանալու համար: Եվ չնայած առաջին տարիներին դպրոցը կազմակերպվեց միայն փորձի կարգով, սակայն կարճ ժամանակում այնպիսի հեղինակություն վայելեց, որ երկու տարի առաջ ինքնության իրավունք ստացավ:

— Սկզբնական շրջանում ամեն ինչ շատ ավելի դժվար էր,— ասում է դպրոցի դիրեկտոր, նախկին զինվորական օդաչու և մաթեմատիկայի ուսուցիչ Վահան [illegible]ապարյանը:— Բացարձակապես ոչինչ չկար, որի վրա կարողանայինք հենվել դպրոցն ստեղծելիս: Սակայն մեզ սիրով օգնեցին Մոսկվայի պիոներների կենտրոնական պալատի տիեզերագնացների ակումբի աշխատակիցները, որոնք արդեն այսպիսի դպրոցի աշխատանքային ծրագիր ունեին: Իսկ նյութական օգնություն ստացանք մեր հանրապետական ԴՕՍԱԱՖ-ի օդագնացության մարզական ակումբի կողմից, որոնց բազայի վրա էլ ընկլսեցինք մեր աշխատանքները...

Դպրոցի օդագնացության բաժնում այժմ հարյուր տղաներ ու աղջիկներ են սովորում, որոնք այստեղ են գալիս մայրաքաղաքի տարբեր հանրակրթական դպրոցներից: Որպեսզի նրանք բոլորը հնարավորություն ունենան ըստ նախասիրությունների ճիշտ կողմնորոշվել, կարողանան զբաղվել իրենց սիրած գործով, այստեղ հինգերորդ-վեցերորդ դասարանցիների համար գործում է նախապատրաստական դասարանը: Նրանցից շատերը երազում են թռչել հասնել հեռու-հեռավոր աշխարհներ, նաև սիրում են սեփական ձեռքերով ինքնաթիռներ ու հրթիռներ կառուցելու հրապուրիչ աշխատանքը, թեև դեռ պարզ պատկերացում չունեն այն ամենի մասին, ինչի վերջին օղակն է դառնում երկինք մխրճվող թռչող ապարատը: Նախապատրաստական դասարանում նրանք իմանում են, որ, օդաչուներից ու տիեզերագնացներից առաջ, այդ թռչող սարքերի հետ աշխատում են ուրիշ մասնագիտությունների տեր բազմաթիվ մարդիկ: Իսկ ի՞նչն է իրենց ավելի դուր գալիս. նախագծե՞լը, թե՞ պարաշյուտով թռչելը կամ սավառնակով օդում զանազան թռիչքաձևեր կատարելը, աստղադիտակ կառուցե՞լը, թե՞ ռադիոսարքավորումներ ստեղծելն ու տիեզերական մակետաշինությունը...

Ուսման երկրորդ տարում պատանիներն ու աղջիկները սկսում են նաև պարաշյուտով



# ՆՈԿԱՈՒՏ

ՎԻԿՏՈՐ ԲԱԼԱՅԱՆ



Կարճահասակ էր, փոքր կազմվածքով: Որևէ վեճի կամ կռվի ժամանակ ոչ ոք ուշադրություն չէր դարձնում նրա վրա: Նա էլ քաշվում էր մի կողմ և իր փոքրիկ սև ու փայլուն աչքերի տակից հետևում էր ընկերներին: Ամենից շատ նա խուսափում էր Իվետայից: Երբ ինքը մի բան էր ասում, խսկույն բարձրանում էր Իվետայի ածխի նման սև հոնքերից մեկը:

— Օ՜հ, «Նվաղ Գրիգորն» էլ է ուզում կարծիք հայտնել,— ասում էր նա ու քիթն այնպես ցցում, որ կարծես քթի տակ աստղ էր դրվում:

Իսկ Ժիրիկն ու Լյովան անփույթ նայում էին նրա կողմն ու ծիծաղում: Իվետան ընկերություն է անում նրանց հետ, երևի նրա համար, որ փայլում էին նրանց կոշիկները, որ նրանք միշտ հագնվում էին կոկիկ՝ սև կոստյում, սպիտակ վերնաշապիկ, կապում փառավոր փողկապ: Իսկ ինքը հագնվում էր համեստ ու անփույթ: Երևի նրանց կշիռը մեծանում էր Իվետայի աչքում նաև այն պատճառով, որ Ժիրիկն ու Լյովան զբաղվում էին բռնցքամարտով...

Իվետան հաճախ էր պարծենալով ասում.

— Սրանք իմ թիկնապահներն են, ո՞վ կհամարձակվի ինձ վիրավորել:

Երբ Գրիգորը փոխադրվեց 9-րդ դասարան, մայրը մահացավ. նրա խնամքին մնաց 7-ամյա քույրը: Գրիգորը մտածեց թողնել դպրոցը, անցնել աշխատանքի: Ուսուցիչները առաջարկեցին. «Մենք կօգնենք քեզ...» Գրիգորը չհամաձայնեց: Նա սկսեց ցերեկներն աշխատել գործարանում, երեկոները՝ դպրոց հաճախել:

Նա այլևս չէր հասցնում սպորտդպրոց գնալ: Ու բռնցքամարտի գծով դպրոցի չեմպիոնը թողեց մարզումները: Մարզիչը շատ համոզեց, բան դուրս չեկավ:

Լավ մարդիկ էին նրա աշխատանքային ավագ ընկերները, որոնք այնպես հմտորեն ու արագ էին էլեկտրական սարքեր պատրաստում, որ Գրիգորը ամեն ջանք անում էր նմանվել նրանց:

— Դպրոցն ավարտես, քեզ բաց չենք թողնի այստեղից,— ասում էին նրանք:

Այդպես էլ եղավ... Անցան ամիսներ և Գրիգորը, ինչպես ասում են, ոտքի կանգնեց: Սակայն նրան շա-

սպորտային թռիչքներ կատարել Երևանի Կոմերիտմիության անվան այգու մարզական աշտարակից, Արգնու օդագնացության բազայում թռչում են ինքնաթիռներով, սովորում են սավառնել, օդագնացության բարձրագույն արվեստի թռիչքաձևերի գաղտնիքներն ու օդանավերի շարժիչների լեզուն, երկրի ու երկնքի միջև անխափան կապ պահպանելու ձևերը:

— Մոտ ապագայում, երբ կսկսի ամբողջապես գործել նաև աստղագիտության ու տիեզերագնացության բաժինը, մեր աշակերտների թիվը կհասնի 200-ի,— ասում է դիրեկտորը,— իսկ հնարավորության դեպքում նույնիսկ 400-ի: Այնպես որ հետագայում ավելի շատ երեխաներ կարող են մասնակցել մեր պարապմունքներին և իրենց հետաքրքրող շատ հարցերին պատասխան ստանալ:

Սեղանների մոտ նստած տղաներն ու աղջիկները փաներայից ձևավոր մասեր էին կտրում: Կամաց-կամաց այդ մասերից ծնունդ էին առնում նոր մոդելները, և ես պատկերացնում էի, թե ինչպես են զեկույցներ տալու խմբերի հրամանատարները.

— Երկիր-Մարս միջմոլորակային նավի անձնակազմը պատրաստ է թռիչքին...

— Երկիր-Յուպիտեր միջմոլորակային նավի անձնակազմը պատրաստ է...

Ապա լսվում է հերթապահ ոռքոտի մետաղե ձայնը.

— Ինը, ութ... երկու, մեկ, շարժիչ...

Շրջապատը լուսավորվում է շարժիչների հզոր լույսից, և աստղերը մի պահ խամրում են: Թռիչքն սկսվում է...

ռունակում էին հալածել Իվետայի ծաղրանքները. «Գրիգորը տիկնիկ է դարձել, նվազ տիկնիկ, սպում է, չէ՞, այդ անունը նրան»: Ու նորից նրա հոնքը վեր էր բարձրանում, քիթը ցցվում:

Մի օր Գրիգորը կանգնեց գործարանի բռնցքամարտիկների խմբի մարզիչի առջև:

— Ուզում եմ ես էլ պարապել,— ասաց նա:

— Հը՞, չլինի՞ ուզում ես մեր չեմպիոնին հաղթել,— ցույց տալով Ժիրիկի կողմը՝ հռհռաց Լյովան ու ավելացրեց.— Նվազ տիկնիկի գործ չէ բռնցքամարտը:

Մարզիչը նախատինքով նայեց Լյովային, մոտեցավ նրան, որ ինչ-որ բան ասի: Գրիգորը շրջվեց ու թողեց դահլիճը:



Գործարանի ակումբը լեփ-լցվել էր բանվորներով, հյուրերով: Այդ օրը մրցելու էին գործարանի ուժեղագույն բռնցքամարտիկները:

Առաջին կարգում ինչ-որ անծանոթ մարդու հետ նստել էր Գրիգորը: Նրանց առջևով հպարտորեն անցան Ժիրիկը, Լյովան, Իվետան:

— Բարև՛, նվա՛զ տիկնիկ,— խփելով նրա ուսին՝ ասաց Ժիրիկը:

Կարմիրը ներկեց Գրիգորի ականջները:

Նա շրթունքները սեղմեց, որ ծպտուն չհանի: Լուռ մնաց նույնիսկ այն ժամանակ, երբ Իվետան քրքջալով ասաց.

— Չլինի՞ թե դու էլ ես մրցումներին մասնակցելու:

— Այո՛, օրիո՛րդ, մասնակցելու է,— Գրիգորի փոխարեն պատասխանեց կողքին նստած տղան, սուր հայացք գցելով Իվետայի վրա:

Իվետան քրքջալով գնաց իր «թիկնապահների» հետ:

Մի քանի րոպե անց Գրիգորը դահլիճից անհետացավ: «Տիկնիկը չուզեց նայել Ժիրիկի մարտը»,— քըմծիծաղ տվեց Իվետան:

Հետաքրքիր էին անցնում մարտերը, սակայն երբ եկավ Ժիրիկի ելույթ ունենալու պահը, դատավորը հայտարարեց.

— Ժիրիկ Ավագյանի հետ հանդիպում կունենա գործարանի ամենաերիտասարդ բռնցքամարտիկներից Գրիգոր Էլոյանը:

Դահլիճով շշուկի մի ալիք անցավ:

Ինչպե՞ս, այդ որտե՞ղ է Գրիգորը բռնցքամարտել սովորել, չէ՞ որ նա չէր մասնակցում գործարանի բռնցքամարտիկների պարապմունքներին:

Իվետան ու Լյովան քըրքջում էին, այնպես էին քրքջում, որ լսվում էր ամբողջ դահլիճում:

— Ժիրի՞կ, չես ամաչում, տիկնիկի հե՞տ ես չափվելու,— ձայն էր տալիս Լյովան:

Ժիրիկն արհամարհանքով նայում էր մրցահարթակ մտած Գրիգորին ու իրար վարկում ձեռնոցները: Այն տղան, որ դահլիճում նստած էր Գրիգորի կողքին, մոտեցել էր մրցահարթակին ու ինչ-որ խորհուրդներ էր տալիս Գրիգորին: Ո՞վ էր նա...

Գրիգորը հենվել էր մրցահարթակի պարանին ու հանգիստ սպասում էր:

Այժմ նրա աշխատանքային ընկերները զարմանքով նկատեցին, թե ինչպես մկանուտ են Գրիգորի թևերն ու կուրծքը, թե ինչպես նա վստահ է կանգնում իր ջլուտ ոտքերի վրա:

Գոնգ: Սկսվեց մարտը: Ժիրիկը մարտը վարում էր ծիծաղելով, դեմքը բաց, կարծես թե խաղ էր անում: Սակայն նրա երեսին իջավ Գրիգորի թույլ հարվածը: Ժիրիկը կատաղեց ու անցավ գրոհի: Գրիգորը պաշտպանվում էր, խույս տալիս նրա հարվածներից:

Հանկարծ Ժիրիկն ուժեղ հարվածեց «հակառակորդին»: Գրիգորը վայր ընկավ:

— Մե՜կ, երկո՛ւ, երե՛ք...— հաշվում էր դատավորը:

— Կբարձրանա՞:

— Չի բարձրանա,— լսվում էր դահլիճում:

— Ի՛նը...

Գրիգորը բարձրացավ...

Կարծես հրաշքով փոխվեց դրությունը: Ժիրիկը հոգնածությունից կծկվել էր կարկուտի նման տեղացող հարվածներից: Դահլիճը զարմացել էր. Գրիգորի փոքր մարմնի մեջ որտեղի՞ց այդքան տոկունություն, համառություն, ուժ:

Հարված: Ժիրիկն ընկավ:

— Մե՛կ, երկո՛ւ... տա՛սը:

— Նոկա՛ուտ,— հնչեց դատավորի ձայնը:

Դահլիճում պայթեցին ծափերը: Գրիգորը, սրբելով ճակատի քրտինքը, լուռ նայում էր առաջին կարգում նստած Իվետային ու Լյովային, որոնք կախել էին գլուխները:

Իսկ Գրիգորի ծանոթը դարձավ Իվետային.

— Տեսա՞ք, օրիո՛րդ, որ մասնակցեց մրցամարտին և վատ չմասնակցեց:

— Գուցե ձեր օգնությա՞մբ,— արհամարհանքով արտասանեց Իվետան՝ առանց նայելու իր խոսակցին:

— Այո՛, իմ օգնությամբ... Դեռ դպրոցական նստարանից, երեք տարի շարունակ, ես սպորտդպրոցում մարզել եմ Գրիգորին: Նա վերջերս վերադարձավ ինձ մոտ, ես նորից մարզում եմ նրան:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# ԳԱՐՆԱՆԱՅԻՆ ՕՐ

ԼԵՎՈՆ ԲԼԲՈՒԼՅԱՆ

Բյուր թիթեռներ ելան արշալույսի սրտից
Ու ցրիվ եկան դաշտերի վրա,
Դաշտերի վրա թրթռացին երկար
Ու շաղեցին տաքո՜ւկ, տաքուկ ոսկեփոշի:

Լույսի կարոտ հոսեց ցողուններով դեպ վեր,
Ու բացվեցին մեղմիվ թերթերը նուրբ.
Եվ դաշտերի վրա բույր էր, խինդ էր ու լույս,
Եվ դաշտերում օրը բարի էր ու մաքուր...

Նկ. ԿԱՄՈ ԳՅԱՆՋՅԱՆԻ

# ԵՐԳ

ԿՈՍՏԱՆ ԿՈՍՏԱՆՅԱՆ

Արծաթ շուրթին աղբյուրի
Գարնան մի երգ կա դյութիչ.
Փախչող առուն աղբյուրից
Զորն է տանում խինդ ու ճիչ:
Փրփուր-փրփուր շուրթերով
Համբուրում է հողն ամուր.
Ու քարերի արանքում
Ճիչը դառնում է մամուռ:

# ԱՅՍՈՒԱՄԵՆԱՅՆԻՎ

ՌՈՒԲԵՆ ՄԱՐՈՒԽՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Երևանում հայրս հանդիպել էր իր հին բարեկամներից մեկին՝ էրզրումցի հնակարկատ Խորեն Թագվորյանին և նրա օգնությամբ մեզ համար մի տուն էր ճարել Տերյան փողոցի վրա:

— Կինոստուդիայի կողքին է,— ասել էր նա և ավելացրել.— Կինոստուդիան կուլտուրայի օջախ է, երեխաների համար լավ կլինի:

Հայրս տեսել էր տունը, հավանել: Հետո եկավ ու մեզ ասաց.

— Կինոստուդիայի կողքին տուն եմ տեսել, գնանք առնենք: Երեխաների համար լավ կլինի: Կինոստուդիան կուլտուրայի օջախ է:

— Ի՞նչ օջախ է,— հարցրեց տատս:

— Կուլտուրայի,— պատասխանեց հայրս:

— Հա՜ա...— երկարացրեց տատս ու լռեց:

Գնացինք տունը տեսնելու: Խանձված հողե պատերով, տափակ տանիքով, ճռռան դռնով տուն էր: Սենյակներից մեկի լուսամուտները նայում էին փողոցին, մյուսինը՝ բակին, որտեղ հաստաբուն ու շատ գեղեցիկ մի թթենի կար:

— Բա կինոստուդիան ո՞ւր է,— հարցրինք մենք:

— Մեր տան պատր կպած է նրան,— ասաց հայրս ու ձեռքով թփթփացրեց պատին:

Հետո եկավ Խորեն Թագվորյանն ու ասաց.

— Հը՞, հավանեցի՞ք,— նա աջ ձեռքի ցուցամատն ու միջամատը միացրեց իրար, հանդարտ ու հանդիսավոր շոյեց բեղերը:

— Ոչի՞նչ, լավ է,— ասաց հայրս:

— Ոչինչ չէ, այլ գերազանց է: Այսուամենայնի՜վ, այնուամենայնի՜վ, լավ է: Վաղր քեզ կհարցնեն՝ որտե՞ղ է քո տունը: Դու կպատասխանես՝ կինոստուդիայի կողքին: Իսկ դա ի՞նչ է նշանակում՝ կուլտուրական օջախ,— նա մատները նորից սլացրեց բեղերի վրայով, ժպտաց ու նայեց թթենուն.— Միայն այս թթենին ինչ ասես արժե: Հիմա երեխաները ինչքան թութ կուտեն՝ կուտեն: Ինչ էլ որ մնա՝ կչորացնեք, ձմռանը կուտեն: Այսուամենայնի՜վ, այնուամենայնի՜վ, մրգեղեն է:

Ես ծիծաղեցի, մայրս ժպտաց, քույրերս քրքջացին: Հայրս ասաց.

— Խորե՛ն, ինչո՞ւ ես «այսուամենայնի՜վ, այնուամենայնի՜վ» ասում:



— Վա՜յ, քո տունը չեն մնա, հա՜: Սա հո քո Բայազեդը չէ՞: Սա խորհրդային երկիր է, պետք է գրաբար խոսել: Այսուամենայնի՛վ, այնուամենայնի՛վ, կուլտուրական շրջապատի մեջ ենք: Հապա ասա կինեմատոգրաֆիա՛:

— Ինչպես-ինչպե՞ս,— հարցրեց հայրս:

— Կինեմատոգրաֆիա՛... բա՛,— արտակարգ գեղեցիկ ու երգեցիկ ձայնով արտասանեց նա այս բառը և շարունակեց.— Այստեղ բոլորը կրթված մարդիկ են: Ինձ ասում են՝ ընկեր Խորեն, կոշիկիս ներբանը պոկվել է: Այսուամենայնի՛վ... այնուամենայնի՛վ, ես իմ շնորհքը պետք է ցույց տամ: Հո չեմ ասի՝ տուր մխեմ:

— Բա ի՞նչ ես ասում:

— Ասում եմ՝ այսուամենայնիվ, թողեք ձեր կոշիկը, ես կամրացնեմ նրա ներբանը:

— Իսկ նրանք ի՞նչ են ասում,— ժպտաց հայրս:

— Ի՞նչ կա, որ ի՞նչ ասեն: Ուրախ-ուրախ գնում են: Դու հիմա ինձ չես հասկանա: Տեղափոխվեք այստեղ, ես նոր ձեզ հետ կխոսեմ: Դե, այսուամենայնի՛վ... այնուամենայնի՛վ, մնացեք բարո՛վ,— ասաց նա, մի քանի հատ թութ գցեց բերանն ու գնաց:

Աշնան վերջին մենք ապրում էինք մեր նոր տանը, որի կտուրը տափակ էր, պատերը խառնված հողից էին, իսկ դուռը ճոռան էր:

Մեր տնից քիչ հեռու, փողոցի կեռմանում, կապույտ դռնով մի խուց կար, որի մեջ մի կերպ տեղավորվել էր Խորեն Թագվորյանը: Նրա առջև դրված էր փոքրիկ մի սեղան, որի վրա շարված էին տարբեր չափսերի բզեր, մեխեր, անսովոր ծուռտիկ մի մուրճ, աքցաններ և մի քանի սուր-սուր դանակ:

Ես օրը երկու անգամ տեսնում էի հնակարկատ Խորեն Թագվորյանին: Մեկ՝ առավոտյան, երբ գնում էի դպրոց, մեկ էլ, կեսօրին՝ երբ տուն էի վերադառնում: Առավոտյան ես նրան ասում էի.

— Բարի լո՛ւյս ձեզ:

— Հազա՜ր բարի քեզ, ախպո՛րս տղա,— ժպտում էր նա ու եռանդով շարունակում աշխատանքը:

— Բարի օ՞ր ձեզ,— տուն վերադառնալիս բղավում էի ես:

— Աստծո՜ւ բարին քեզ, ախպո՛րս տղա,— իմ բարևին պատասխանում էր նա՝ ակնոցի վերևից զննելով ինձ ու հետո հարցնում էր.— Էսօր ի՞նչ ես ստացել:

— Հայոցից՝ «գերազանց»,— ասում էի ես:

— Նե՛րս համեցիր, ախպո՛րս տղա, տեսնեմ էդ «գերազանցը» ո՞նց ես ստացել,— նա թողնում էր գործը, ձեռքերն իրար խփելով թափ տալիս ու նայում ուղիղ աչքերիս մեջ:

Ես խցկվում էի արհեստանոցը, նստում ցածր աթոռին ու Խորեն Թագվորյանի համար արտասանում Հովհաննես Թումանյանի «Շունն ու կատուն»:

Հետո նրան պատմում էի դպրոցի, ուսուցիչների և մեր դասարանի մասին: Հետո Խորեն Թագվորյանն էր սկսում պատմել իր մանկության ու պատանեկության մասին: Հիշում էր իրենց քաղաքը, որի անունը Էրզրում էր, որը գովական վարժապետներ ու դպրոցներ ուներ: Հիշում էր բոլոր նրանց, ովքեր ավարտել էին այդ դպրոցները ու կարգին մարդիկ էին դարձել:

— Մեր վարժապետ պարոն Սենեքերիմը ընտիր ռուսերենով կարողանում էր իր մտքերն արտահայտել: Նա մեզ սովորեցնում էր հին-հին երգեր, որոնք աղի ու հացի համ ունեին: Է՜, ախպո՛րս տղա, մերն անցավ, հիմա հերթը ձերն է:

Մի առավոտ դպրոց գնալիս, տեսա նրան ոտքից-գլուխ հագած-կապած կանգնել է արհեստանոցի դռան առջև ու բեղերն է շոյում:

— Բարի լո՜ւյս ձեզ,— բղավեցի ես:

— Հազա՜ր բարին քեզ, ախպո՛րս տղա,— ասաց նա:— Մի քանի օր ինձ չես տեսնի, կարևորագույն գործով տեղ եմ գնում:

— Ո՞ւր,— հարցրեցի ես:

— Դեր խաղալու: Ռեժիսորի կոշիկն էի վերանորոգում, նայեց, նայեց երեսիս ու ասաց. «Ընկե՛ր Խորեն, դու տիպաժ ես, արի՛ քեզ նկարահանեմ,— ասաց,— համ փող կստանաս, համ էլ կըմտնես պատմության մեջ»: Ես էլ գնում եմ նկարահանվեմ: Սրան կինեմատոգրաֆիա՛ կասեն, մերը չմեռնի, ո՞նց եկավ ինձ գտավ:

Հենց այդ ժամանակ մեզ մոտեցավ մի ավտոմեքենա, որի թափքում էլի մարդիկ կային:

— Նստե՛ք: Արա՛գ-արա՛գ, ժամանակ չկա,— ավտոմեքենայի խցիկից գլուխը դուրս հանեց խոշորաչք մի երիտասարդ:

— Դե՛, ես գնացի: Ձերոնց բարևի՛ր...

Նա ցատկեց ավտոմեքենայի թափքը, ձեռքը թափահարեց օդի մեջ:

— Գնացի՛նք,— բղավեց խոշորաչք տղան: Ավտոմեքենան թափով տեղից պոկվեց, փոշի հանելով հեռացավ:

Մի շաբաթ հետո նորից հանդիպեցի Խորեն Թագվորյանին:

— Բարի լո՜ւյս ձեզ,— ուրախացած բղավեցի ես:

— Աստծո՛ւ բարին քեզ, ախպո՛րս տղա: Ի՞նչ կա, ի՞նչ չկա: Ձերոնք ո՞նց են:

— Լավ են,— պատասխանեցի ես:

— Կինեմատոգրաֆիան հրաշք է,— սկսեց պատմել նա:— Զինվորի շորեր հագցրին, հրացան տվին, թուրը կապեցին կողքիցս, կռիվ էր: Մուխ-մուխ, թնդանոթ, ձիեր, մարդիկ խառնվել էին իրար: Ես վազում էի շարքերի առջևից ու բղավում. «Կեցցե՜ Հայաստանը»: Սպասեք մի կինոն դուրս գա՛, նոր կիմանաք, թե ես ով եմ: Մարդիկ կտեսնեն, կճանաչեն, կհարգեն և վերջապես կասեն. «Ընկե՛ր Խորեն, արի՛ քեզ մի լավ գործի դնենք»: Սպասի՜ր, դեռ ինչե՜ր է լինելու,— ոչ այնքան ինձ, որքան իր հետ էր խոսում Խորեն Թագվորյանը, աչքերն անսովոր կրակների պեծպեծանքներով լցված:

— Ինձ էլ կտանե՞ք ձեր կինոն տեսնեմ,— հարցրեցի ես, ու սիրտս այնպիսի ակնածանքով լցվեց նրա հանդեպ, որ աչքերս արցունքոտվեցին:

— Իհա՜րկե, կտանեմ: Դեռ սպասի՛ր, ինձ Էրզրումցի Խորե՞ն կասեն:— Նա վերցրեց մուրճը ու եռանդով սկսեց մեխեր շարել տղամարդու մի մեծ կոշիկի ներբանի վրա:

Ամբողջ երեկո ես մերոնց պատմում էի Խորեն Թագվորյանի մասին և կարծես տեսնում նրան կինոսրահի սպիտակ պաստառի վրա սևաթույր նժույգով, յափունչին ուսերին, արծաթազօծ սուրը ճոճելով արշավելիս: Եվ այդ մարդը իմ ծանոթն է, և այդ մարդը Խորեն Թագվորյանն է, որին օրը երկու անգամ հանդիպում եմ ու զրուցում հետը:

Աշնան մի երեկո, երբ թթենու տերևները նախշուն գորգերի նման փռվել էին մեր բակի, տանիքի, արևախանձ պատերի վրա, մեր տուն եկավ Խորեն Թագվորյանը ու ասաց.

— Հագնվե՛ք, գնում ենք կինո:

— Ի՞նչ կինո,— հարցրեց հայրս:

— Իմ կինոն,— ասաց նա,— ուշանում ենք, շո՛ւտ արեք:

Մենք էլ հարցեր չտվեցինք: Հագնվեցինք ու տանից դուրս ելանք:

Փողոցում մեզ շատ մարդիկ էին սպասում: Նրանք բոլորը ճանաչում էին իրար: Նրանք արհեստավորներ էին՝ կոշկակարներ ու դերձակներ, ներկարարներ ու քարտաշներ, դարբիններ ու հյուսներ, որոնք հագել էին տոնական զգեստներ, կանանց, երեխաների հետ եկել, որ տեսնեն իրենց ընկերոջ կինոն:

— Մնաց մի քանի րոպե, արա՛գ քայլեք՝ հանկարծ չուշանանք,— խոսեց Խորեն Թագվորյանը ու առաջ ընկավ:

Կինոթատրոնի մուտքի մոտ, բարձրահասակ ու գեղեցիկ մի մարդ բարևեց Խորեն Թագվորյանին ու բոլորին ներս թողեց:

— Դիրեկտորն է,— շշնջաց Խորեն Թագվորյանը:

Դահլիճը լեփ-լեցուն էր: Լույսը մարեց: Լուսավորվեց սպիտակ պաստառը, որի վրա հայտնվեցին բնապատկերներ, գյուղեր, մարդիկ, ու հետո սկսվեց կռիվը: Սարերի դարավանդներին, քարերի մեջ զինվորները խառնվել էին իրար ու կրակում էին: Ձիերը վրնջում էին, անհանգիստ ծառս լինում: Ծխի ու փոշու ամպերի միջով մարդիկ էին վազվզում այս ու այն կողմ: Եվ ահա այդ խառնաշփոթ իրարանցման ժամանակ հայտնվեց Խորեն

Թագվորյանը՝ գլխին սև փափախ, մեջքին մաուզեր կապած, խոժոռ ու զայրացած նա բղավում էր՝ «Կեցցե՜ Հայաստանը»։ Հետո ծնկի իջավ ու սկսեց կրակել։ Հենց այդ միջոցին մենք տեսանք, թե ինչպես բարձունքի վրա կանգնած ջահել տղան, որի ձեռքին դրոշ կար, բռնեց կուրծքը և վայր ընկավ։ Դահլիճը հառաչեց։ Նորից երևաց Խորեն Թագվորյանի հրճվանքով ու ոգևորությամբ լեցուն հայացքը։ Նա ոտքի ելավ ու սկսեց վազել, նորից ծունկի իջավ, նորից կրակեց, ծխի ամպի մեջ կորավ նրա դեմքը։

— Ա՜յ տղա, Խորե՜ն, էդ ո՞ւմ վրա ես կրակում,— շշուկով հարցրեց դարբին Հայրապետը։

— Սուտ է... ես... ես դրա վրա չեմ կրակել,— կմկմաց Խորենը։

— Ա՜յ տղա, չե՞ս ամաչում,— բարձրաձայն ասաց դերձակ Մացակը։— Մեզ բերել ես այստեղ, որ քո ստոր գործերը ցույց տա՞ս։

— Խանգարում եք,— ետևի նստարանից զգուշացրեց հանդիսատեսներից մեկը։

— Լռե՜ք,— զայրացավ մեկ ուրիշը։

— Ինչո՞ւ լռենք,— բղավեց Խորեն Թագվորյանը ու ոտքի ելավ.— Ռեժիսո՜ր,— զայրացած բղավեց նա,— ինձ դավաճան ես դարձրել, մարդասպան ես դարձրել, հա՞... Կանգնեցրե՜ք ձեր կինոն, ձեր հե՜րն անիծեմ։

Մեզ մոտեցավ մի մարդ ու դուրս հրավիրեց։

— Ո՜չ մի դուրս,— բղավեց բարտաշ Բարթուղը։— Մարդուն խայտառակ եք արել բավական չէ, մեզ էլ դուրս եք քշո՞ւմ։

Հետո էլի մարդիկ եկան, որոնք հրմշտելով, հայհոյելով, մեզ դուրս հանեցին դահլիճից ու փակեցին դռները։

Փողոցի աղոտ լույսերի մեջ ես տեսա մերոնց դեմքերը՝ տխուր, մտահոգ ու մոլոր.

— Խորե՜ն, լավ բան չարիր, աշխարհքով մեկ մեզ խայտառակեցիր։

— Ա՜յ տղա, թո՜ղ քեզ դրոշակ բռնող դարձնեին, թո՜ղ դու մեռնեիր, մենք էլ կպարծենայինք քեզանով։ Բա դա բան է՞ր։ Խելքդ դրել ես գյադագյուղի խելքին,— վշտացած ասաց անեցի Մաղաքե Թանդիլխանյանը ու խռոված գնաց։

— Ախր ինձ ուրիշ բան ասացին, բայց ուրի՜շ բան դուրս եկավ,— նրա ետևից բղավեց Խորենը։

— Տնաքանդ,— վրա տվեց թիթեղագործ Ենոքը,— ասացին մարդ սպանի՞ր։

— Էնտեղ մարդ չկար։ Ես հենց այնպես էի կրակում,— բացատրեց Խորենը։

— Հասակ առած մարդ ես, չես ամաչում, սուտ ես խոսում,— զայրացավ դարբին Սամսոնը։

— Մենք հո դարման չե՞նք ուտում, ինչպե՞ս թե այնտեղ մարդ չկար։ Դու չէի՞ր էն դրոշակ բռնող տղին սպանողը։ Ամո՜թ քեզ, ամո՜թ,— գոռգոռաց հյուսն Վահանը, թքեց ու գնաց։

Եվ այսպես բոլորը զայրացած, վշտացած հեռացան իրենց տները, փողոցում մենակ ու մոլոր թողնելով մեր բարի, մեր խեղճ Խորեն Թագվորյանին։ Ճանապարհին հայրս ասաց.

— Անտե՜ր կինեմատոգրաֆիա, ո՜նց խայտառակեց մարդուն։

Առավոտյան վերցրեցի պայուսակս ու տանից դուրս ելա։ Մտածում էի, որ նորից սովորականի պես կանցնեմ Խորեն Թագվորյանի արհեստանոցի մոտով ու բարձրաձայն կասեմ «Բարի լույս ձեզ»։ Իբր ոչինչ չի պատահել։

Բայց արհեստանոցը փակ էր։ Մեր փողոցի անկյունում գտնվող հնակարկատի արհեստանոցի դուռը այլևս չբացվեց։ Մի օր էլ աննկատելի վերացավ։ Ո՞ւր տարավ Խորեն Թագվորյանն իր արհեստանոցը, չիմացանք։





# ԾԱՂԻԿԸ

ՍԵՐՈ ԱՆՏՈՆՅԱՆ

Կանաչ դաշտում, թփի տակ,
Օրորվում է մի ծաղիկ,
Աչքեր ունի կապուտակ,
Թերթերի շող ու շաղիկ:

Շուրջը հովերն են խաղում
Ու ջրերն են երգում զով,
Ժպտում է նա, ծիծաղում,
Հարբած հանդի երազով:

Կապույտ շաղը թերթերի
Կապույտ ամպից է առել,
Ու հայրենի լանջերին
Կապույտ խարույկ է վառել:



# ԱՊՐԻԼ

ԱՆԱՀԻՏ ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Երկինքը հանդին դրել է նոր շաղ
Եվ զրուցում է ծլած արտի հետ,
Միրաճիները ծաղկել են ուրախ,
Ջրի ճամփան է դարձել բուրավետ:
Հովը բուրմունք է թևերին տանում,
Առվակն է ելել իր հունից սովոր,
Գարնան ձորերով իր տունն է դառնում
Հեռու հյուսիսից ջահել մի զինվոր...

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



# ԳԵՂԵՑԻԿ ՀՈՒՇԸ

ՄԱՐԳՈ ՂՈՒԿԱՍՅԱՆ

Երբեմն նրան թվում էր, թե դա տեսել է երազում: Եվ ուզում էր հասկանալ, թե ինչն է դրա պատճառը: Չէ՞ որ ինքը շատ լավ հիշում էր այն ճանապարհը, որով սայլը գնում էր: Հիշում էր այն գետը, որի միջով սայլը անցավ, եզները կանգնեցին ու մի կուշտ ջուր խմեցին: Հետո դժվարությամբ դուրս եկան գետից ու սայլը կիսաքանդ ճանապարհով քաշեցին բլուրն ի վեր: Բլրի ետևում գյուղն էր:

Բաջօղլի: Տները՝ փոքրիկ, իրարից հեռու-հեռու: Գյուղի ծայրի տները կարծես լողում էին կապույտ մշուշի մեջ: Գյուղը համարյա դատարկ էր, որովհետև անասունները սար էին տարել: Երբ սայլը գյուղ մտավ, երեխաները դեմ չվազեցին: Մի քիչ էլ գնաց ու ճռռալով կանգնեց. կարելի էր կարծել, թե ամբողջ գյուղում շարժվողը միայն այդ սայլն էր, եզները և սայլի վրայի մարդիկ: Քիչ հետո բացվեց սև կողպեքը և երկաթե օղերը զրնգոցով կպան իրար:

Նեղ պատուհաններով գյուղական ցածրիկ տուն էր, որի կողքին թոնրատունն էր: Թոնրատան կողքին՝ գոմը: Գոմի շարունակությունը ցախատունն էր: Ապա քարե ցանկապատով սահմանափակված անորոշ ձևի մի տարածություն: Այնտեղ նոր կտրած աթարը զույգերով իրար էին հենել, որ արանքներում օդ խաղա և շուտ չորանա:

Նա շատ լավ հիշում է, որ մարտի ճտերը ճարպկորեն անցնում էին աթարի եռանկյունի բացվածքներով, նախ խորամանկորեն գլխիկներն էին հանում և ապա սահելով դուրս գալիս ու թևերը թափահարում, կարծես նեղ խողովակից անցած լինեին:

Էլ ինչպե՞ս կարող էր շարունակությունը երազ լինել:

Ինչքա՞ն ժամանակ է անցել: Ինքը ինը տարեկան էր: Մոր հորեղբոր աղջիկը գյուղից եկել էր իրենց տուն: Գնալու օրը ասել էր.

— Այս փոքրիկի երեսին գույն չկա. չտանե՞մ մի քանի օր գյուղում արև տեսնի:

Մայրը մի քիչ մտածել էր ու համաձայնել:

— Տա՞ր, երեխան ոչ մի անգամ գյուղում չի եղել:

Այս կարճ խոսակցությունն էլ էր շատ լավ տըպավորվել, որովհետև այդ ժամանակ ինքը նստած էր տան շեմին և ձեռքի հացից մանր կտորներ էր նետում ծտերին, որոնք կտցում ու ետ էին թռչում, կտցում ու ետ էին թռչում:

Տեսնես, գյուղի այն տունը քանդել, տեղը նորերն են սարքե՞լ, թե՞ հինը թողել են և նորը կողքին կառուցել: Նրանց գոնե թոնրատունն ու գոմը քանդած չլինեին: Բայց եթե նույնիսկ քանդել են, միևնույն է, նա մտովի տեսնում է գորշավուն քարով շարած պատերը և մեծ սողնակներով դռները:

Գոմի դռան տակ մի փոքր անցք էր թողած, որ հավերը ազատ ելումուտ անեին:

Մի անգամ թոնրից նոր հանած բաղարջի մի կես տվեցին ու ասացին.

— Քո ձեռքով կարագ քսի, կե՞ր:

Կարագով լիքը թասերը շարած էին իրար կողքի, և նա մեկից մի գդալ կարագ վերցրեց ու մատով տափակացրեց բաղարջին: Կծեց. աղի էր: Կամացուկ դրեց սեղանի անկյունին: Լավ էր, որ չպընդեցին, թե կեր: Միայն ականջին հասավ, որ մոր հորեղբոր աղջիկը ասում է.

— Սովոր չէ:

Այդ նույն օրը, երեկոյան կողմ, Սալվի մորաքույրն ասաց.

— Երեկ բունկալը դատարկ էր, բայց հիմա ածած կլինեն, գնա՛ ձվերը բեր:

Նախորդ օրերին նա գոմ էր մտել Սալվի մորաքրոջ հետ և ոչ մի արտակարգ բան չէր նկատել: Բայց ահա նա միայնակ կանգնած է շեմին ու կարծես ամբողջ աշխարհը սուզվել է լռության մեջ: Կարծես ձայները գյուղի կանանց ու երեխաների հետ սարն են բարձրացել: Եվ զովության ու լռության մեջ արևի պայծառ շողը լուսավոր սյան նըման թեքությամբ կտրել է գոմը՝ երդիկից մինչև բունկալը, մնացած անկյունները թողնելով մթության մեջ: Լռությա՞ն, աչք խտղտացնող արևի շողի՞, թե՞ այլ պատճառով, ինքն էլ չգիտեր, մի քանի րոպե անշարժ կանգնեց: Հետո աչքերը վարժվեցին: Առաջ գնաց: Արևի շողն ընկել էր ծըղոտե հին զամբյուղի վրա, որի մեջ փափուկ խոտ էր դրված: Նա նայեց արևի շողին, որի մեջ կարծես խաղում ու դեպի երդիկի բացվածքն էին ձգվում մանրիկ ոսկեհատիկներ: Նրա մտքով էլ չէր անցնում, որ դրանք փոշեհատիկներ էին:

Մի երկու քայլ էլ առաջ գնաց. կարծես հմայված լիներ: Մոտեցավ զամբյուղին, որի մեջ պետք է ձվերը լինեին: Նա ապշած կանգ առավ: Ծղոտե հին զամբյուղը կարծես արևի լույսով լցված լիներ,



որի կենտրոնում մի ձու կար: Սպիտակ, մաքուր, քնքշորեն թեթև հպված չոր խոտերին:

Նա ձեռքը մեկնեց, որ ձուն վերցնի: Սակայն շտապով ձեռքը ետ քաշեց:

Հիմա նա մտածում է. արդյոք ի՞նչը մղեց նրան այդպես վարվելու: Ինչո՞ւ նա մատով անգամ չկպավ փափուկ խոտին դրված, քնքուշ, սպիտակ ձվին:

Նա մի քիչ կանգնեց այդ սքանչելի տեսարանի առաջ ու կամացուկ դուրս եկավ:

Գնաց տուն ու լուռ կանգնեց Սալվի մորաքրոջ առաջ:

— Ձու չկա՞ր,— հարցրեց նա:

Նա գլխով արեց՝ կար:

— Իսկ ինչո՞ւ չբերեցիր:

Չպատասխանեց: Մոր հորեղբոր աղջիկը զարմացած նայեց և տարօրինակ մի բան նկատած մարդու նման ինքը գնաց ձվերի ետևից: Քիչ հետո նա ևս դատարկաձեռն դուրս եկավ և տեսնելով երեխային նույն դիրքում, ձայնի հուզադրող շեշտով ասաց.

— Ձուն թողեցի բունկալում:



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Թոնրատունը և գոմը գուցե թե քանդված չլինեն, որովհետև պատերը շատ ամուր էին և երդիկներին միշտ քար էին գլորում, որ անձրևաջուրը ներս չըլցվեր:

Թոնրատան և գոմի միջև արևի շողը պտտվում էր թեթև, անբռնելի, լուսավոր սլաքի նման: Օրվա տարբեր ժամերին տարբեր անկյուններն էին լուսավորվում: Մեկ թոնրատան պատին հենված խնոցին: Մեկ թարեքը՝ քրեղաններով: Պատահում էր, որ լուսավորվում էր գոմի հին մսուրքը, որի մեջ ճաքած կճուճներ էին դրված, աղով լի: Երբեմն ընկնում էր ջուր ցողված ու մաքուր ավլած հողե հատակին և այդ ժամանակ թվում էր, թե Սալվի մորաքույրը սկուտեղը մոռացել է գետնին:

Նա նույնիսկ տեսել էր, որ արևի լուսավոր սյունը ուղիղ թոնրի մեջ է իջել և նրան թվացել էր, որ զորավոր այդ սյունը մխրճվել է գետնի մեջ՝ խո՜րը, խո՜րը:

Բայց որ ուղղակի բունկալի վրա ընկած լիներ... Նա կյանքում մեկ անգամ բախտ էր ունեցել տեսնելու...

# Ջեկ Լոնդոն



(Ծննդյան 100-ամյակը)

Օվկիանոսի հուժկու ալիքը ծառս էր լինում, սև երախը բաց անում և ամեն ինչ կուլ տալու մտադրությամբ փշրվում «Սոֆի Սալըլենդ» առագաստանավի տախտակամածին: Նավը Ամերիկայից դուրս գալով լողում էր դեպի Կորեա, Ճապոնիա, Սիբիր, ծովարջի որսի:

Ջեկը փլում էր աղի ջրերը, ամուր սեղմում ղեկանիվը և առանց ամենափոքր խուճապի, նավը տանում գորշ ալիքներին դեմառդեմ: Պատահական չէին ո՛չ այս նավի վրա Ջեկի հայտնվելը, ո՛չ ծովամրրիկի դեմ նրա մենամարտը: Ընդամենը երկու տարի առաջ էր, 1891 թ. մի պայծառ օր, երբ 15-ամյա Ջեկը իր խնայած դրամով ու նեգր դայակ Ջեննիի տված պարտքով ծովահեն Ֆրենչ Ֆրենքից գնեց նրա «Ռեզլ-Դեզլ» փոքրիկ առագաստանավը և գիշերները ամենահանդուգն նավապետի նման լողում էր իր ծննդավայր Սան-Ֆրանցիսկոյի ծովախորշերում, զբաղվում ոստրեների որսով: Սատանա Նելսոնի հետ Ջեկը ապրում էր ինչպես իսկական նավաստի: Բայց կար մի բան, որով նա տարբերվում էր իր ընկերներից՝ ընթերցասիրությունը: Ծովահենի իր խրախճանքներից հետո, նա միշտ առանձնանում էր նավախցում և



Նկ. ՅՈՒԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԻ

ինքնամոռաց ու խորասուզված կարդում:

Ուժեղ կամքն ու բնավորության տարօրինակությունները Ջեկը ժառանգել էր հորից՝ պրոֆեսոր Չանիից, որին սակայն երբեք չէր տեսել, և մորից՝ Ֆլորա Ուելմանից: Ջեկը շատ էր սիրում խորթ հորը՝ Ջոն Լոնդոնին, որի հետ 11 տարեկանից կիսում էր ընտանիքի հոգսը:

Մանկության տարիներին Ջեկի ամենասիրած վայրը Օքլենդի հանրային գրադարանն էր, իսկ գրադարանավարուհի Այնա Քուլբրիթը նրա առաջին լուրջ խորհրդատուն էր: Ջեկը կլանում էր արկածային գրքերը, կարդում նաև ավելի լուրջ գործեր՝ Կիպլինգի «Լույսը հանգավ»-ը, Մելվիլի «Թայփին», Զոլայի «Ժերմինալը», Շոուի «Սիրող սոցիալիստը»:

Ահա, հենց Արկածն էլ նրան տարավ «Սոֆի Սադըրլենդ» առագաստանավը: Ծեր ծովագայլերը արհամարհանքով էին նայում պատանի նավաստուն: Բայց Ջեկը կարողացավ համառ աշխատանքով հաղթահարել նրանց թերահավատությունը, և այժմ ուժեղ փոթորկի պահին անգամ, նավապետը նրան է վիճել ղեկը՝ վստահելով 17-ամյա նավաստու մեծ կարողությանը: Այս պատճառով է Ջեկը ինքնագոհ ժպտում և հաղթողի վստահությամբ կռվում փոթորկի դեմ:

Այդպես էլ մինչև իր կյանքի վերջը Ջեկ Լոնդոնը չլքեց ծովը: Հետագայում, երբ նա արդեն ընտանիքի հայր էր, նշանավոր գրող, գնեց «Սփրեյ» նավը և նրա վրա գրում էր իր լավագույն գեղարվեստական գործերը: 1904 թ. Լոնդոնը «Սիբիր» նավով մեկնեց Իոկոհամա՝ ռուս-ճապոնական պատերազմի մասին թղթակցություններ գրելու: Նա նորից վերապրեց տասը տարի առաջ իր ունեցած արկածները, հիշեց ընկերներին՝ Խոշոր Վիկտորին ու Աքսելին: Այո, Ջեկը լավ գիտեր ծովի կյանքն ու նրա մարդկանց: Եվ այդ հիմքի վրա էլ ծնվեցին նրա լավագույն գործերը՝ «Ծովագայլը», «Ճանապարհորդություն «Շլացուցիչ» նավով», «Խռովություն «Էլսինորայի» վրա»:

Վերջապես Ջեկ Լոնդոնը որոշեց փոքրիկ մի նավով շուրջերկրյա ճանապարհորդություն կատարել: Իր համերկրացիների զարմացական հայացքների տակ, 1907 թ. գարնանը «Սնարք» կիսախարխուլ նավով օվկիանոս դուրս եկավ: Հասավ Մարկիզյան կղզիները, շատ արկածներ ունեցավ: Ապրում էր նեգր բնիկների հետ, ուսումնասիրում նրանց սովորությունները և նրանց կյանքից գրում պատմվածքներ:

Սակայն Մեծ Արկածը միայն դեպի ծովը չէ, որ տանում էր Ջեկին: Արկածասիրությունը նրան 1896 թ. գարնանը միացրեց դեպի Ալյասկա հորդացող ոսկեխույզների խմբին: Նա իր ապագա գրքերի հերոսների հետ մեծ դժվարություններ էր հաղթահարում. ծոցատետրը լցվում էր այս ուժեղ ու հետաքրքիր, նաև չար ու փողամոլ մարդկանց դիմանկարներով: Համատարած ձյունամրրիկի ու սառույցի անշարժության մեջ մեծ թափով աշխատում էր Ջեկի հարուստ երևակայությունը: Եվ թեպետ նա իր գրպանում Ալյասկայից մի պատառիկ ոսկեփոշի անգամ չբերեց, նրա ուղեղում բազմաթիվ գանձեր հավաքվեցին, որ հետագայում վերածվեցին հյուսիսի մարդկանց կյանքի մասին փայլուն վեպերի ու պատմվածքների՝ «Ճերմակ անդորրություն», «Գայլի որդին», «Հյուսիսային Ոդիսևսը», «Զյան դուստրը», «Նրա հայրերի աստվածը», «Սառնամանիքի զավակները», «Ինչպես արգոնավորդները հնում» և այլն:

Անցնելով բազմաթիվ դժվարությունների միջով, ճանաչելով մարդուն և լավ իմանալով նրա բնությունը, Ջեկ Լոնդոնը հակադրում էր այդ ամենը կենդանիների հավատարմությանը: Այսպիսով կենդանիների մասին իր վեպերում «Նախնիների կանչը», «Կղզեաբնակ Ջերրին» և այլն, նա իրականում առաջ էր քաշում մարդկային կյանքի հարցեր, վերլուծում մարդու հոգեբանությունը:

Արդեն նշանավոր գրող Լոնդոնը որպես «Ամերիկյան մամուլի» թղթակից պատրաստվում է մեկնել Հարավային Աֆրիկա՝ հոդվածներ գրելու անգլո-բուրական պատերազմի մասին: Ուղևորվում է նախ Անգլիա: Նրան այդպես էլ ոչ մի կերպ չի հաջողվում հասնել Աֆրիկա: Առանց դրամի մնացած Ջեկը որոշում է օգտվել առիթից և ուսումնասիրել Լոնդոնի Իսթ-Էնդ նշանավոր թաղամասի հատակի մարդկանց կյանքը: Այդ վտանգավոր ձեռնարկի համար նա ինքն էլ չքավորի տեսք է առնում: Իսթ-Էնդի մարդիկ սիրով են ընդունում նախկին թափառականին ու նավաստուն, իսկ Ջեկ Լոնդոնը ավազակների այդ որջում գտնում է նաև բարի ու աշխատավոր, հալածված ու պատեհ ապաստանած մարդկանց: Այդ նրանց մասին է պատմում «Անդունդի մարդիկ»

նշանավոր վեպը: Հասարակ մարդկանց կյանքի իմացությունն էլ անհատապաշտ Ջեկ Լոնդոնին դարձնում է սոցիալիստ:

Հեշտ չի եղել նաև Ջեկ Լոնդոնի ստեղծագործական կյանքը: Գրելուն զուգընթաց զբաղվել է պատահական աշխատանքներով, հաճախ դրամ չի ունեցել ծրար ու դրոշմանիշ գնելու և հերթական պատմվածքը խմբագրություն ուղարկելու համար: Բայց կամքը միշտ հաղթել է, ու նա կարողացել է ստեղծել լավագույն վեպեր ու պատմվածքներ, ուժեղ կամքի տեր անհատների մասին գեղարվեստական փայլուն պատմություններ, որոնք մեծ չափով հիշեցնում են նաև իրենց հեղինակի կյանքի հերոսական ուղին: Պատահական չէ, որ ինքնակենսագրական «Գարու հատիկ Ջոնը» և «Մարտին Իդեն» վեպերը դիտվում են որպես նրա ստեղծագործության լավագույն էջերը:

Ջեկ Լոնդոնը հիմնավորապես ուսումնասիրել էր իր ժամանակի ողջ գիտական ու գեղարվեստական միտքը, բազմակողմանիորեն ապրել կյանքը և ստեղծել համաշխարհային գրականության անմահ գործեր: Նա ծանր ուղի անցավ, բայց աննկուն կամքի ուժով հասավ իր նպատակին: Նա երջանիկ էր:

Սակայն 14 տարիների ընթացքում 41 գիրք ծնած նրա ուղեղը սկսում է հոգնել: Կյանքի վերջին տարիներին Լոնդոնը հիասթափություն է ապրում: Նրան անընդհատ հետապնդում է այն միտքը, թե կեղծ է ու անմիտ իր ամբողջ գործը, թե ինքը այլևս ոչ մի բարեկամ չունի: Այսպես, հռչակավոր և հուսախաբված, 1916 թ. նոյեմբերի 22-ի երեկոյան վախճանվում է Ջեկ Լոնդոնը՝ ապագային թողնելով իր անմահ գործերը, որոնք հափշտակությամբ կարդում են և՛ մեծերը, և՛ փոքրերը:

ՎԱԶԳԵՆ ՍԱՖԱՐՅԱՆ



*Թևավոր խոսքեր*

## ԼԵՌԸ ՄՈՒԿ ԾՆ՜ԵՑ

Դեռ շատ վաղուց մարդկանց մտապատկերում մի ծիծաղելի կերպար է ստեղծվել: Հսկայական լեռը երկար նախապատրաստություններից հետո, ճարայ-ճրոցով լույս աշխարհ է բերում մի պստլիկ կենդանի՝ մկնիկ: Դեռևս հնադարյան գրողների՝ Պլուտարքոսի, Հորացիոսի մոտ մենք հանդիպում ենք վերը նշվածի հետ կապված կատակին և դրանից հետո էլ այս արտահայտությունը տարբեր վարիանտներով երբեք հնացած չի թվացել աշխարհի բոլոր ժողովուրդների գրողներին ու առակագիրներին: «Ջանում են լեռ ծնել, բայց մկնիկ են ծնում», իր ժամանակի պոետներին ծաղրել է նաև ռուս բանաստեղծ Տրեդյակովսկին: Այսպես էին որակում ապաշնորհ հանգեր թխողներին ու առհասարակ բոլոր նրանց, ովքեր շատ խոստանում են և քիչ անում:

Հազարամյակներ առաջ ծնված այս սուր խոսքը ապրում է մեր օրերում և հայտնի չէ, թե դեռ ինչքան կապրի: Ահա թե ինչ մեծ ուժ է դրված նրա մեջ:



## ԴԱՄՈԿԼՅԱ՜Ն ՍՈՒՐ

Չեմ ուզում ամեն անգամ կրկնել նույն խոսքը. «ինչպես ավանդությունն է ասում», «ինչպես պատմում են հինավուրց առասպելները»: Կարծում եմ, ընթերցողներն իրենք կարող են զանազանել հեքիաթն իրականությունից և մտացածինը՝ ճշմարտից:

Սիրակուզայի բռնակալ (հին Հունաստանում այդպես էին կոչում անսահմանափակ իրավունքներ ունեցող տիրակալներին) Դիոնիսիոսը մի պալատական ուներ Դամոկլ անունով: Դամոկլը նախանձում էր իր տիրակալին և չէր թաքցնում դա: Մի անգամ բռնակալը, որ սիրում էր Դամոկլին, խնջույքի ժամանակ ծառաներին հրամայում է գահին նստեցնել իր սիրեցյալին և արքայավայել մեծարել նրան: Դամոկլը քիչ էր մնում խայտա հրճվանքից: Բայց ահա նա հայացքը վեր է բարձրացնում և քարանում տեղում: Նրա գլխավերևում, սուր շեղբը ցած ուղղած, ձիու բարակ մազից կախված էր մի ծանր սուր: «Դու իմ վիճակը նախանձելի ես համարում, Դամո՛կլ,— ասաց բռնակալը:— Տեսնո՞ւմ ես, հանգի՞ստ եմ արդյոք իմ գահի վրա»:

Այդ ժամանակից ի վեր «դամոկլյան սուր» խոսքը մեզ հիշեցնում է մեր գլխին կախված վտանգի մասին, որ կարող է ամեն րոպե փլվել մեզ վրա:

## ՆՎԻՐՎԱԾ Է ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻՆ



*ՍՍՀՄ պատանի ֆիլատելիստների հայկական բաժնի նախագահ Ավետիք Գյոզալյանը հուշանվեր է հանձնում Պուշկինի անվան դպրոցի ֆիլատելիստական խմբակի նախագահ Արմեն Առաքելյանին*

Համամիութենական պատանեկան առաջին ֆիլատելիստական ցուցահանդեսը բացվել է հերոս քաղաք Կիևում 1969 թվականին, երկրորդը՝ հերոս քաղաք Մինսկում 1972 թվականին, իսկ երրորդը բացվեց անցյալ տարվա նոյեմբերի վերջին Երևանում: Տաս օր շարունակ մայրաքաղաքի նկարիչների տան սրահներում ցուցադրվում էին հարյուր հիսուն հազար ծրարներ, նամականիշեր, փոստային բացիկներ, ինքնատիպ ձևավորումներ, որոնք ֆիլատելիստական հետաքրքիր նյութեր էին պարունակում Սովետական Միության, սոցիալիստական ու աշխարհի այլ երկրների մասին: Մեծ հետաքրքրություն էին ներկայացնում պատանի ֆիլատելիստների ակումբների մշտական հավաքածուները:

Ցուցահանդեսը հարուստ տեղեկություններ էր տալիս կուսակցության պատմության ու նրա ականավոր ներկայացուցիչների, տիեզերագնացության, երկրագնդի բուսական ու կենդանական աշխարհի, մեր մոլորակի տարբեր ծայրերում ստեղծված գեղանկարչության լավագույն գործերի մասին: Առանձին ֆիլատելիստներ իրենց հավաքածուների հետ ընդարձակ տեղեկություններ էին գրել նամականիշերի պատմության կամ ամբողջ հավաքածուի մասին: Ծաղիկներով ու բույսերով հետաքրքրվողները այստեղ կարող էին իմանալ դրանցից շատերի ստեղծման շուրջ հյուսված զրույցներն ու լեգենդները:

Ֆիլատելիստների ցուցահանդեսը, որի աշխատանքները տևեցին տասն օր, նվիրված էր կուսակցության 25-րդ համագումարին և մեծ հետաքրքրություն առաջացրեց դպրոցականների շրջանում:

Լավագույն հավաքածուների հեղինակները պարգևատրվեցին ձեռքի կինոխցիկով, տարբեր գավաթներով, հուշանվերներով, ձեռքի ժամացույցներով և այլ արժեքավոր նվերներով:

## «Պիոների» փոստից




Դաս եմ հարցնում 8-րդ դասարանի աշակերտներից մեկին:

— Չեմ սովորել:

— Ինչո՞ւ:

— Անցյալ դասին բացակայում էի:

— Իսկ ո՞ւր էիր գնացել:

— ...

— Ի՞նչ կարևոր գործ ունեիր:

— ...

Այս երկխոսությունը շատ հաճախ է կրկնվում իմ և իմ մի շարք աշակերտների միջև: Ինչպե՞ս, ի՞նչ են անում նրանք, դասից փախչող, բացակայող այդ աշակերտները, ինչո՞վ են զբաղվում:

Հետևենք նրանց:

Մեր դպրոցը գտնվում է գյուղի կենտրոնում: Այստեղից է սկսվում գյուղի եռուզեռը: Նրանք պարապ-սարապ կանգնում են գյուղամիջում, նայում այս ու այն կողմ, անցուդարձ անողներին: Եվ այսպես ժամեր շարունակ: Զարմանում և միևնույն ժամանակ ցավում ես մարդկային ուժերի և ընդունակությունների այդպիսի անմիտ վատնումի վրա:

Մի ուրիշ պատկեր: Դպրոցի միջանցքում կանգնած մի խումբ տղաներ վիճում են:

— Երկու լավ աղավնի եմ նոր ստացել, — ասում է նրանցից մեկը:

— Գնանք թռցնենք, — խոսքի վրա է բերում մյուսը:

Եվ տղաների խումբը աղմուկով, հարայ-հրոցով դուրս է գալիս դպրոցից: Ու ոչ մեկը չի մտածում, որ այդ «հանդիսավոր արարողությունը» աղավնի թռցնելը, կարելի է և դասերից հետո կատարել: Այսպես լքում են նրանք դասերը և մատյանում «բացակաները» մեկը մյուսին են գումարվում:

— Այսօր լավ կինո կա, չգնա՞նք, — ասում է դասարանի «հեղինակավոր» տղաներից մեկը: Ու... դատարկվում է դասարանը, կինոթատրոնի տոմսարկղի մոտ հերթի են կանգնում աշակերտները: Չէ՞ր կարելի դասերից հետո կինո գնալ: Իհարկե, կարելի էր: Բայց տղաներին ձգում է... ռոմանտիկա՛ն: Այո, ոմանք դասերից փախչելու մեջ ռոմանտիկա են տեսնում, ուզում են նմանվել արկածային ֆիլմերի իրենց սիրելի հերոսներին՝ վտանգավոր և գրավիչ հնարանքներով դասերից փախչելով: Ինչպիսի՜ մոլորություն, դրանով ոչ մի հերոսի էլ չես նմանվի, պարզապես վնասում ես քեզ, ետ ընկնում դասերից, դասերի նկատմամբ անտարբեր դառնում: Մինչդեռ մյուս դասընկերներդ այդ ժամերին գրավիչ ճանապարհորդություն են կատարում գեղեցիկի և գիտելիքների աշխարհում, ի՜նչ բերկրանք, ի՜նչ ներքին ուրախություն ապրելով:

Աշակերտներիցս մեկը, որը ծույլ և անպարտաճանաչ էր, դասարանում ոչինչ չէր հետաքրքրում նրան, իհարկե, եթե դասարանում էր: Շատ էր բացակայում դասերից:

Հիմա նա ծառայում է սովետական բանակում: Այնտեղ նա արդեն հասկացել է ու ինչպե՜ս է «զղջում» անիմաստ կորցրած այն թանկագին տարիների համար, երբ կարող էր գիտելիքներ ձեռք բերել: Այո՛, զղջում է և այն էլ ինչպե՜ս, ի՜նչ խելոք, խրատական նամակներ է գրում փոքր քրոջն ու եղբայրներին: Խորհուրդ է տալիս նրանց լավ սովորել, հենց դպրոցական նստարանից մտածել ապագայի մասին, որպեսզի իր նման չզղջան, չափսոսան: «Ես սխալվել եմ, իմ սխալը թող դաս լինի ձեզ», — ամեն նամակում գրում է նա:

Ուր է թե նրա օրինակը դաս հանդիսանա ոչ միայն իր քրոջ ու եղբայրների, այլև բոլոր ծույլ և անպարտաճանաչ աշակերտների համար:

*ԶՈՒԲԵՐԴԱ ԽԱՉԱՏՐՅԱՆ*
*Հոկտեմբերյան, Հր. Քոչարի անվան դպրոցի ուսուցչուհի*

## ԱՂԲՅՈՒՐ

ՎԱՀԱՆ ՄԱՐԳԱՅԱՆ

Կարկաչում է աղբյուրն անձայն,
Ծոր է գնում ժայռի շուրջին,
Ամռան շոգին չի ցամաքում
Ու չի սառչում ձմռան ցրտին:

Ժայռը ճեղքում, դուրս է ծորում,
Խայտում է նա ալիք-ալիք



Եվ ջուր խմող ամեն մարդու
Այսպես է նա խորհուրդ տալիս.

— Ակը որքան խորքից բացես,
Ինչքան քարեր մաշես ճամփին,
Այնքան երկար կկարկաչես
Ու կլինես այնքան վճիտ...



## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԸՆԴԱՄԵՆԸ ԽՈՍՏՈՒՄՆԵՐ ԱՐՎԵՑԻՆ...

Սովորական անդորր էր տիրում Երևանի № 74 դպրոցում: Փակ դռների ետևից երբեմն լսվում էին դաս պատասխանողների ձայները: Հնչեց դասամիջոցի զանգը: Դուռը, որից քիչ հեռու կանգնած էի, կրնկի վրա բացվեց, ուսուցչուհին դուրս եկավ և իր ետևից ծածկեց: Մի քանի վայրկյան անց այդ դռանը մոտեցավ պիոներական հասակի մի տղա: Նա չհասցրեց դուռը բացել: Ներսից այնպիսի արագությամբ հրեցին, բացեցին դուռը, որ Արթուրը փռվեց հատակին:

Անմիջապես ոտքի ելնելով, նա նետվեց դեպի իր վրա ծիծաղող աղջիկները: Սկսեցին աղմուկով քաշկռտել իրար: Դասարանից դուրս եկան ևս մի քանի աղջիկ և ձեռքերի պայուսակները նետեցին արդեն իրար անխնա հարվածող տղայի ու աղջիկների վրա:

Քանի որ այդ ամենը նրանք անում էին ծիծաղելով, կարելի էր ենթադրել, որ սովորական բան է կատարվում: Գզվռտոցի հեղինակները երևի ձանձրացան պայուսակներով ու փոշեթաթախ սրբիչով իրար հարվածելուց և գործի դրին վերարկուները: Ստիպված միջամտեցի և սառեցված դադարից օգտվելով հարցրի, թե ինչո՞ւ են այդպես անխնա հարվածում իրար, գրենական պիտույքները, գրքերն ու արտահագուստը փոշոտում: Չէ՞ որ կարող է «Լուսարձակ շտաբի» անդամներից կամ օրվա հերթապահներից մեկը այդ պահին գալ ու պատժել նրանց, կարող են նրանց ծաղրանկարները տպագրել պատի թերթում և իրենց դասարանի պատիվը կընկնի ամբողջ դպրոցում:

Ի՞նչ «Լուսարձակ» շտաբ, ի՞նչ հերթապահ,— կարմացած ասացին նրանք:

Դասի զանգն արդեն հնչել էր, ուսուցչուհին դասարան մտավ և մեր զրույցն ընդհատվեց:

Միջանցքով քայլում էի: Դասարաններից մեկի բաց դռնից ներս նայեցի և ի՞նչ. խզմզված, փորփրված ու նկարազարդված պատերից թեև դժվարությամբ, բայց, գուցե թե մի կերպ, կարելի էր որոշել դրանց նախնական գույնը: Սակայն նույնը չէր կարելի ասել աշակերտական նստարանների մասին: Էլ ինչպիսի՞ խորաքանդակներ ու հարթաքանդակներ ասես, որ չէր արված անօգնական նստարաններին: Օրվա հերթապահները՝ Սուսաննան ու Անժելան անվրդով կատարում էին իրենց պարտականությունը՝ հատակը մաքրում էին ամեն տեսակի կեղտից ու անհամար թղթե մանրագնդակներից:

Ինչպես և նախորդ դասարանում, այստեղ նույնպես, ինձ չհաջողվեց շտաբի գոյության որևէ նախանշան հայտնաբերել: Սակայն այդքան շուտ հուսահատվել պետք չէր և որոնումներս շարունակեցի հաջորդ մասնաշենքում:

Նոր մասնաշենք մտա դասամիջոցին: Եթե զանգի ձայնը չլիներ, լուսամուտների ապակիների զրնգոցից, ցած նետվող ծանր աթոռակների դղրդոցներից ու իրարանցումից պարզ կդառնար, որ № 74 դպրոցում դասամիջոց է:

Դռներից մեկի մոտով անցնելիս լացի ձայն հասավ ականջիս: Ներս մտա: Յոթերորդ դասարանցիները անասելի հրճվանքով հետևում էին մի զավեշտական տեսարանի: Արմենը անխնա հարվածներ էր հասցնում Վարդգեսին, իսկ վերջինս գլուխը միայն պաշտպանելով, արտասվում էր: Մինչ ես պատուհանը կճեղքեի նրանց մոտենալու համար, Արմենը ծլկեց: Փորձեցի պատճառը իմանալ: Աղջիկներից մեկը համառորեն պնդեց, որ ոչ մի բան էլ տեղի չի ունեցել: Այսինքն իմ նկատածը, Վարդգեսի արցունքներն ու կանչերը տեսողական ու լսողական խաբկանք էին: Լավ ընկեր երևալու ակնհայտ ջանքերով, նրանք, այնուամենայնիվ ինձ հասկացրին, որ սովորական բան էր տեսածս, պետք չէր ո՛չ զարմանալ, ո՛չ վրդովվել և մանավանդ ուշադրություն դարձնել:

Միջանցքի ծայրում ինձ սպասում էին այլ անակնկալներ: Ութերորդ դասարանցիները, ուսուցչուհու գալուց հետո էլ համառորեն չէին ուզում դասարան մտնել: Իսկ մի խումբ բարձր դասարանցիներ խնամքով պատրաստված ու գեղեցկատես նոր նստարանները ոչ թե տեղափոխում էին, այլ նետում հատակին կամ իրար վրա: Ջուր էին անցնում տարեց հավաքարարուհու հորդորներն ու խնդրանքները: Դեռ դասարան չմտած՝ նստարանները խզմզվում ու փչանում էին այդ անբարեխիղճների ձեռքին:

Վերջապես գտա և զրուցեցի դպրոցի կոմերիտական կազմակերպության քարտուղարի և «Լուսարձակ» շտաբի պետի հետ: Ռաշիդ Ավետիսյանն ու Արարատ Մեսրոպյանը առարկելու ոչինչ չգտան և համաձայն էին, որ թեև երկրորդ քառորդը մոտենում է ավարտին, շտաբը իր տասնմեկ անդամներով ոչինչ չի արել. պատի թերթ չունի, հերթապահություն չի սահմանում դասամիջոցներին, ոչ մի օգնություն ցույց չի տալիս պիոներական կազմակերպությանը...

Ուշադրության արժանի միակ բանը, որ ասաց շտաբի պետ Արարատը ողջ զրույցի ընթացքում, այն էր, որ խոստացավ բացի նետաձգությունից, ժամանակ տրամադրել նաև շտաբի աշխատանքների աշխուժացմանը: Իսկ Ռաշիդն էլ խոստացավ օգնել նրան:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*

*«Պիոներ»-ի պիոներ-դպրոցական բաժնի վարիչ*

# ՄԵՐ ԸՆԴԵՐՔԻ ԳԱՆՁԵՐԸ

*ՍՈՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ (Ինժեներ-երկրաբան)*

Մեր փոքր հանրապետության երկրաբանական կառուցվածքը չափազանց բարդ է։ Նրա կազմության մեջ մտնում են գրեթե բոլոր երկրաբանական ժամանակների լեռնային ապարները՝ ամենահներից մինչև նորագույնները։ Այս բազմազան ապարների հետ կապված են տարբեր օգտակար հանածոներ՝ սև և գունավոր մետաղներ, անսպառ պաշարներով բազմատեսակ շինանյութեր, հանքային և քաղցրահամ ջրեր, հրաշալի զարդաքարեր և այլն։

Թերևս ոչ բոլորը գիտեն, որ մեր հանրապետությունը գունավոր մետաղների արդյունահանմամբ գրավում է երրորդ տեղը Սովետական Միության մեջ՝ ՌՍՖՍՀ-ից և Ղազախստանից հետո։ Հայաստանի ընդերքը հարուստ է պղնձով, մոլիբդենով, ոսկով, արծաթով, երկաթով, մանգանով, կապարով, ցինկով, բազմաթիվ հազվագյուտ մետաղներով, որոնցից են սելենը, տելուրը, կադմիումը, ռենիումը, գերմանիումը և այլն։ Բայց մեր հանրապետության համար առավել բնորոշ են մոլիբդենի, պղնձի, ոսկու և ալյումինի հանքավայրերը։

Պղնձի գլխավոր հանքավայրերն են Ղափանը, Ալավերդին, Շամլուղը և Ախթալան։ Այս հանքավայրերը շահագործվում են անհիշելի ժամանակներից և հանդիսանում են հանրապետության հանքարդյունաբերության առաջնեկները։ Ղափանի պղնձով իրենց հրանոթներն են ձուլել Դավիթ Բեկըն ու Մխիթար սպարապետը։ Պղնձի շնորհիվ է, որ Ղափանն ու Ալավերդին այսօր ժամանակակից արդյունաբերական քաղաքներ են։ Այնտեղ կան բազմաթիվ այլ խոշոր ձեռնարկություններ, բայց բնակչության հիմնական մասն զբաղված է լեռնահանքային արդյունաբերության մեջ։

Պղինձ-մոլիբդենային հիմնական հանքավայրերը գտնվում են հարավային Հայաստանում։ Դրանք են Քաջարանը, Ագարակը և Դաստակերտը։

Թե՛ Քաջարանը, թե՛ Իրանի սահմանի մոտ գտնվող Ագարակը լեռնահանքային կենտրոններ են բնորոշ առանձնահատկություններով։ Ողջի գետի կիրճում Գանձասարը վերևից կոմբինատին է միացվում ճոպանուղով, որով անընդհատ շարժվում են հանքաքարով բեռնված վագոնիկները։ Հսկա Գանձասարը կիսվել է։ Իսկ երբեմնի փոքրիկ գյուղակի փոխարեն այժմ Քաջարանում լեռներից էլ վեր բարձրացել են բազմահարկ շենքերը։

Ոսկու կարևոր հանքավայրերն են Զոդը, որը գտնվում է Վարդենիսի լեռներում, և Մեղրաձորը՝ Հրազդան քաղաքի մոտ։ Զոդի հանքավայրը շահագործվել է հազարամյակներ առաջ։ Այսօր էլ այնտեղ աշխատող երկրաբանները գտնում են հնագույն հանքային փորվածքներ, տարբեր գործիքներ, ոսկու ձուլման պարզունակ վառարաններ և նույնիսկ մարդու կմախքներ։ Զոդի հետախուզական արշավախմբի երկրաբանական սենյակում կարելի է տեսնել նման ցուցանմուշներ։ Լճաշենի պեղումների ընթացքում գտնված ոսկու ուսումնասիրությունը ապացուցել է, որ այդ ոսկին բերվել է Զոդից։ Իսկ այդ նշանակում է, որ Զոդում ոսկի է ձուլվել դեռ երեք ու կես, չորս հազարամյակ առաջ։ Նույնիսկ շատ բան տեսած և հազվադեպ զարմացող երկրաբաններին արտառոց, հրեշավոր, աներևակայելի դաժան են թվում այն պայմանները, որոնցում մեր նախնիները ոսկի են կորզել հանքավայրից։ Դժվար է պատկերացնել, թե ինչպես է հասուն մարդը կարողացել այդ նեղ փորվածքից ոչ միայն մտնել, այլև ոսկի հանել։ Ժամանակակից լեռնային փորվածքները դրանց համեմատությամբ հեքիաթային են։ Պատկերացրեք մի քանի կիլոմետր խորությամբ լեռան կողը մտած թունել, որի միջով ներս ու դուրս են անում 40 տոննանոց բեռ-

## ՀԱԶԱՐ ՈՒ ՄԵԿ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ

1. Ինչո՞վ են նշանավոր գիշերը և ցերեկը Հյուսիսային ու Հարավային բևեռներում։

2. Տարվա ո՞ր ժամանակ է Լենինգրադում լինում «սպիտակ գիշերներ», ինչո՞ւ։

3. Արկտիկական ո՞ր արշիպելագում է արևը ծագում և մայր մտնում տարվա ընթացքում ընդամենը 90 անգամ։

4. Սովետական Միության այն ո՞ր մեծ քաղաքն է, որ ամառը լինում է երկարատև և որքա՞ն է այն տևում։

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ (Աշխարհագրագետ)*




# ԿԵՆԴԱՆԻՆԵՐԻ ՄԱՐԶԱՆՔՆ ՈՒ ԲՈՒԺՈՒՄԸ

Բոլոր կենդանիներն էլ մարզասեր են: Կատուների, շների և ձիերի օրինակով հայտնի է, որ զարթնելուց հետո նրանք անպատճառ մեկ-երկու րոպե մարզանք են կատարում. լարված ձգվում են, ցատկում, թափ տալիս իրենց, խորը արտաշնչում, երբեմն էլ՝ թավալ տալիս: Մարզանք անում են նրանք ամբողջ օրվա ընթացքում, առանձնապես ծանր աշխատանքից հետո: Կենդանիները լիզելով մերսում (մաժում) են իրենց մարմնի այս կամ այն մասը: Շները և կատուները ոչնչացնում են լվերին, քշում ճանճերին, կովերը և ձիերը մաքուր են պահում իրենց նստատեղը, չեն կեղտոտում այդտեղ: Երբ ձին լինում է քուռակի հետ, իսկ կովը՝ հորթի, ապա մայրը առավոտ շատ ձագին ստիպում է արթնանալ և լիզում է նրան: Ծանր հետևանքներ է առաջանում, երբ կենդանիները զուրկ են լինում առավոտյան վարժանք կատարելու հնարավորությունից: Օրինակ, եթե ձին պահում են նեղ ու կարճ շրջանակի մեջ, որտեղ հնարավոր չէ մարզվել, նա հիվանդանում է:

Մեր թվարկության առաջին դարի նշանավոր բնագետ Պլինիոս Ավագը հայտնում է, որ կենդանիները հաճախ ինքնաբուժությամբ են զբաղվում: Բնության մեջ նրանք ճանաչում, գտնում և ուտում են զանազան բույսեր ու արմատներ: 17—18-րդ դարերում այս փաստն արդեն համընդհանուր ճանաչում էր գտել: Ջոնաթան Սվիֆտը «Գուլիվերի ճանապարհորդությունը» գրքում նկարագրելով ձիերի երկիրը, ասում է. «Ես արդեն նկատել էի, որ հույհնհնմները... կարիք չունեն բժշկի: Նրանք ունեն հիանալի դեղեր, որոնցով բուժում են պատահական քերծվածքները, հոդերի ու սմբակի փափուկ մասերի կտրվածքները, ինչպես նաև մարմնի մյուս մասերի վնասվածքներն ու վերքերը»:

Կանադացի գրող և կենդանաբան Է. Սեթոն-Թոմսոնը գրում է, որ կենդանիներն օգտվում են բուժման շատ միջոցներից. արևի լոգանք, սառը ջրում և տաք ցեխերում լող, տեղի և ուտելիքի փոփոխություն, դիետա, հանգիստ, կպչուկների և բաց վերքերի մերսում: Այս ամենը ապացուցում են բազմաթիվ օրինակներով:

Հայտնի է, որ քոսով հիվանդ ձիերը անհամբերությամբ վազում են դեպի աղի լճերը: 2—3 շաբաթ լողանալուց հետո, նրանք լրիվ կազդուրվում են: Եթե ձիերին թույլատրվի արմտիքներից ազատ ընտրություն կատարել, ապա նրանք կընտրեն գազարը, որովհետև երբ մայր ձին գազար է ուտում, քուռակը երբեք չի հիվանդանում փորլուծով: Սիբիրում կա մի բույս, որն առավել հայտնի է «մարալի արմատ» անունով: Եղջերուները կճղակներով քանդում են հողը և ուտում այդ բույսի արմատները: Տեղի բնակիչների վկայությամբ, արմատները նպաստում են եղջերուների աճին և նյութափոխանակությանը: Այդ նպատակով կատուները գարնանը և ամռանը ամեն օր ուտում են վայրի սոխի և սխտորի տերևներ, իսկ ձմռանը «նախաճաշում» են կարտոֆիլի կճեպներով: Տափաստաններում ոչխարները, խոշոր եղջերավոր և վայրի անասունները որոնում և ախորժակով ուտում են դառը օշինդրը: Ապացուցվել է, որ օշինդրի հատուկ նյութերը և յուրահատուկ գլյուկոզիդները կենդանիներին օգնում են ազատվել երիկորդներից: Շատ կենդանիներ գարնանը նախընտրում են խմել հալոցքի ջուրը, որի մեջ եղած փոքր քանակությամբ դեյտերիում խթանում է նրանց գործողությունները: Կենդանինե-

---

նատարները, կամ 500 մետր խորությամբ ուղղահայաց մի անցք, որի միջով ազատ կերպով կարելի է փիղ իջեցնել ուղիղ դեպի ոսկու երակը:

Գործնականորեն անսպառ են մեր հանրապետության ալյումինի պաշարները: Հրազդանի շրջանում է գտնվում Թեժասարի զանգվածը, կազմված նեֆելինային սիենիտներ կոչվող ապարներից: Այս հանքանյութը պարունակում է մեծ քանակությամբ ալյումին, բայց միայն ալյումին չէ, որ ստանում են նրանից: Նեֆելինային սիենիտները հրաշալի հումք են ցեմենտի, բարձրորակ ապակու և բազմաթիվ այլ նյութերի:

Բոլորովին վերջերս երկաթի խոշոր հանքավայր է հայտնաբերվել Աբովյանի շրջանի Կապուտան գյուղի մոտ: Հանքավայրը պետք է շահագործվի բաց եղանակով, որը մի քանի անգամ ավելի քիչ կապիտալ ներդրումներ է պահանջում շահագործման մյուս եղանակների համեմատությամբ: Երկաթի հանքավայրեր կան նաև Հրազդանի և Գորիսի շրջաններում:

րը սիրում են արևը և հաճույքով մնում ճառագայթների տակ: Բայց նրանք չեն կարող տանել շատ շոգը և պատսպարվում են ծառի ստվերում:

Շան ինքնաբուժման մի հետաքրքիր դեպքի մասին է պատմում ակադեմիկոս Ի. Պ. Պավլովը: «Մեր եղանակով վիրահատված շներից մեկը տասը-տասնհինգ օրից հետո սկսեց ենթարկվել ստամոքսահյութի մաշող գործունեության ազդեցությանը: Շունը կապված պահվում էր լաբորատորիայում: Մի անգամ առավոտյան նրա մոտ, որը մինչ այդ հանգիստ վարք ուներ, ի մեծ հուսահատություն մեզ, հայտնաբերեցինք պատից թափված ծեփի կտորտանքներ: Շունն էր պոկոտել: Նրան շղթայակապ տեղափոխեցինք սենյակի մյուս անկյունը: Հաջորդ օրը նույն տեսարանը կրկնվեց: Միաժամանակ նկատելի էր, որ շան դունչը չոր է և մաշկի գրգռումը շատ իջել է: Միայն այդ ժամանակ մենք հասկացանք, թե բանն ինչումն է: Երբ շան համար ավազից նստատեղ պատրաստեցինք, պատերի քանդելը դադարեց և ստամոքսահյութն այլևս չէր վնասում նրան: Մենք երախտագիտությամբ խոստովանեցինք, որ կենդանին իր խելքով օգնեց ոչ միայն իրեն, այլև մեզ: Ափսոս կլիներ, եթե այդ փաստը կորչեր կենդանիների հոգեբանության ուսումնասիրության համար»:

Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑԻ

# ԳԱՐՈՒՆՆԵՐ

ՎԻԳԵՆ ԲԱԲԱՅԱՆ

Գարուննե՛ր հայրենի, գարուննե՛ր ինձ ծանոթ,
իմ ճամփին երազկոտ բացել եմ սիրտս ձեզ,
իմ մանուկ հոգու մեջ ծովացած մի կարոտ
կանչում է ձեզ սիրով, կանչում է կարոտկեզ:
Ինձ ուրիշ եղանակ այդքան շատ չի դյութում,
որքան դո՛ւք, գարուննե՛ր, ինձ նման կանաչող,
ձեր դալար ձեռքերով փայփայում եք, շոյում,
մորս պես քաղցրականչ, մորս պես տուն կանչող...



Այժմ մեր հանքավայրերից մենք միայն բուն մետաղը չէ, որ ստանում ենք, այլ հանքանյութը ենթարկվում է կոմպլեքս մշակման: Հանրապետության հանքավայրերում քիչ չեն ուղեկից ցրիվ ու հազվագյուտ տարրերը՝ սելենը, տելուրը, կադմիումը, ռենիումը, գերմանիումը և այլն: Հաճախ այս տարրերի կորզումը իր գումարային արժեքով գերազանցում է հիմնական մետաղների արժեքին:

Մենք խոսեցինք ամենամեծ և գլխավոր հանքավայրերի մասին, բայց մեր հանրապետությունում կան և ուրիշ, համեմատաբար փոքր հանքավայրեր, որոնք դեռ հետազոտվում են: Այժմ երկրաբանները սկսել են ուսումնասիրել այսպես կոչված կույր հանքավայրերը, այսինքն՝ այնպիսի հանքավայրերը, որոնք ելք չունեն երկրի մակերես և գտնվում են խորը ընդերքում: Սրանց մասին մենք տեղեկություններ ենք ստանում գեոֆիզիկական չափումների միջոցով: Պետք է հուսալ, որ կույր հանքավայրերը մեր երկրին կտան հանքային հարստությունների նոր պաշարներ:

# ԿԱՐԵՔ ԻՆՔՆԵ՛ՐԴ

Ամենօրյա, թեթև, ուսին գցելու պայուսակ չարժե գնել: Այն ինքներդ էլ կարող եք կարել: Ինչի՞ց: Դա էլ խնդիր չէ. հաստ, պինդ կտավ, արհեստական կաշի կամ զամշ, անձրևանոցի կտոր—բոլորն էլ հարմար են: Իսկ եթե տանը կգտնվի հին կաշվե վերարկու կամ բաճկոնակ, շատ ավելի լավ:

Նկարներում տրված են ձեզ առաջարկվող երկու պայուսակների ձևանմուշները: Միշտ կլինի, եթե ցանցաթղթի օգնությամբ վերարտադրեք ձևանմուշները ստվարաթղթի վրա, հետո այդ ձևվածքները դնեք կտորի վրա և կտորը կտրեք:

**Ճանապարհորդական պայուսակ (նկ. 1):** Նախ և առաջ կտրեք պայուսակի երկու հիմնական մասերը՝ «Ա» գծագրի ամբողջությամբ, հետո և երկու՝ ներսի «պ» հատվածները, միջնորմներով արտաքին և ներսի «բ» գրպանները և պայուսակի երկու կողքերը՝ «դ»:

Կտորը ծալեք երեսի կողմը դեպի ներս և նոր միայն կտրեք «ա» և «վ» հիմքը: Յուրաքանչյուր մասին կարեք աստառ՝ եզրից 10 մմ հեռավորությամբ:

Ներսի գրպանի երկու մասերը իրար միացրեք և կարեք, բայց ոչ մինչև վերջ. այլապես դուրս չեք կարողանա կարելուց հետո այն շրջել:

Նույնը կրկնեք մյուս «բ» գրպանը կարելիս:

Զգուշորեն երեսի կողմը շրջեք պայուսակի հիմնական մասը արդեն կարված աստառի հետ, կարեք վրան գրպանները, հետևելով նկարի վրա ցույց տրված տեխնոլոգիային և հաջորդականությանը:

Մնաց գործի քիչ մասը՝ փոկերը: Դրանք պետք է լինեն աստառով՝ պինդ լինելու համար: Լայնքը՝ մոտավորապես 45 մմ: Խորհուրդ ենք տալիս փոկերին եզրակարեր անել, իսկ ճարմանդները ամրացնելու համար բացված անցքերը շրջակարել: Երկու ներսի գրպանների վրա կարեք կարճ փոկ ամեն գրպանի համար մի ճարմանդով: Այդ կարճ փոկի տակից անցկացրեք ուսին գցելու հիմնական փոկը, այնպես ինչպես նկարում է: Մի ծայրին ամրացրեք ճարմանդ, մյուսին՝ անցքեր բացեք:

**Քաթանե պայուսակ (նկ. 2):**

Պարզ, նույնպես ուսին գցելու պայուսակ կարող են պատրաստել մինչև իսկ մեր ամենափոքր ընթերցողները: Այն պատրաստվում է նախշերով, քաթանից կամ խալու կտորից: Կտորից կտրեք «ա» ուղղանկյունի 300×800 մմ չափսով և ծալեք: Կարի մեքենայով կարեք (կարելի է և ձեռքով) պայուսակի կողքերը մինչև վերջ: Գծագրի վրա ծալվածքի և կարերի տեղերը նշված են գծիկներով: Հետո ծալեք պայուսակի վերևի եզրը մոտ 50 մմ լայնքով («բ») և ներյունով շուռ տված եզրից ծոպեր ամրացրեք («գ»): Նկարի վրա ցույց տրված ձևով թելն անցկացրեք կտորի միջով և հանգուցեք:

Ուսին գցելու փոկը ավելի լավ է գործել, իսկ ծայրերը կարել պայուսակի շուռ տված անկյուններից: Իհարկե, փոկը կարելի է կարել և նույն՝ պայուսակի կտորից: Վերջում պայուսակի բացվող մասին կարելի է շղթա դնել:

*Թարգմ. ՏԱԹԵՎԻԿ ՊՈՂՈՍՅԱՆԻ*










# ԳՐԻԳՈՐ ՄԱԿՈՒՆՑ



Մեր ամսագրի խմբագրությունը ծանր կորուստ կրեց: Վախճանվեց ամսագրի բաժնի վարիչ, երիտասարդ շնորհալի ժուռնալիստ, գրող և թարգմանիչ, աշխատանքային ընկերների և բոլոր նրան ճանաչողների կողմից սիրված Գրիգոր Մակունցը (Մրկրտչյան):

Մակունցը ծնվել է 1948 թ. Ադրբեջանական ՍՍՀ-ի Դաշքեսանի շրջանի Կուշչի գյուղում: 1970 թվին ավարտել է Երևանի պետական համալսարանի բանասիրական ֆակուլտետը, 1971 թվից աշխատանքի է անցել «Պիոներ» ամսագրի խմբագրությունում: Այդ ժամանակից սկսած «Պիոների» և «Ծիծեռնակի» էջերում միրված են նրա գողտրիկ, սեղմ և իմաստալից պատմվածքները, ակնարկները, հոդվածներն ու բարձրարվեստ թարգմանությունները:

1974 թ. լույս տեսավ Մակունցի մանկական պատմվածքների անդրանիկ ժողովածուն, «Հեքիաթ սիրում են բոլորը» խորագրով: Երկրորդ ժողովածուն՝ ավելի ստվարածավալ ու հասուն գրչի արգասիք, հավանության արժանանալով, ընդունվել է տպագրության:

Այն ամենը, ինչ ձեռնարկում էր Մակունցը, կատարում էր մեծ բարեխղճությամբ ու մեծ խնամքով, պարտքի ու պատասխանատվության մեծ զգացումով, սիրով, նվիրումով, դրա համար էլ անթերի էր նրա արած յուրաքանչյուր գործը: Մակունցը ազնվության ու բարության մարմնացումն էր: Մակունցը մեծ հարստություն էր կոլեկտիվի և իր ընկերների համար: Մակունցի գեղեցիկ պատկերը հավերժ կապրի նրա ընկերների հիշողության մեջ:

«ՊԻՈՆԵՐԻ» ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ


Լույս է տեսնում 1923 թվականից



# ՊԻՈՆԵՐ

№ 4 ապրիլ 1976 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը*

*ԵԿ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

---




«Пионер» на армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, №15

Հասցեն՝ 375015, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15: Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96

ՎՖ 06431: Պատվեր 379: Տպաքանակ՝ 76906: Տպագրական 3 մամուլ: Ստորագրված է տպագրության 6 IV 1976 թ.:

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղրապլանի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91

# ՀԵՏԱՔՐՔՐԱՇԱՐԺ ՕԴԵՐԵՎՈՒԹԱԲԱՆՈՒԹՅՈՒՆ

1. 24 ժամվա ընթացքում ամենից շատ ձյուն տեղացել է ԱՄՆ-ի Կոլորադո նահանգում, 1924 թվի ապրիլի 14—15-ին: Ձյան բարձրությունը եղել է 193 սմ:

2. Երկրի ամենաչոր շրջանը Արիկան է, Չիլի: Տարվա ընթացքում տեղումների միջին քանակը 0,8 մմ է:

3. Ամենից շատ մշուշոտ օրեր՝ տարին 120 օր, լինում է Նյուֆաունդլենդ կղզում:

4. Ամենաբարձր ջերմաստիճանը՝ +58°C, գրանցվել է Լիբիայի Էլ-Ազիզիա քաղաքում:

5. Ծովի մակերեսին ամենաբարձր ջերմաստիճանը Պարսից ծոցում է՝ +35,6°C:

6. Քամու ռեկորդային արագություն՝ ժամում 416 կմ, գրանցվել է 1934 թ. ապրիլի 12-ին, ԱՄՆ-ի Նյու-Հեմպշիր նահանգում:

7. Ամենից շատ ամպրոպային օրեր՝ տարին 322 օր, եղել է Ինդոնեզիայի Բոգոր շրջանում, 1916—19 թ.թ.:

8. Ծովային ամենաբարձր ալիքը՝ 34 մետր, առաջացել է Խաղաղ օվկիանոսում:

9. Ամենաբարձր և ամենացածր ջերմաստիճանների միջև եղած ամենամեծ տարբերությունը 101, 7°C, լինում է ՍՍՀՄ-ի Վերխոյանսկ քաղաքում:

10. Աշխարհի ամենաանձրևոտ շրջանը Չիլիի հարավն է: Տարվա ընթացքում 325 օր անձրև է գալիս:

11. Ամենացածր ջերմաստիճանը գրանցվել է Անտարկտիդայում՝ —88, 3°C, «ՎՈՍԽՈԴ» բևեռային կայան:

12. Սահարան երկրի ամենաարևոտ շրջանն է: Արևն այստեղ տարին լուսավորում է 4300 ժամ, այսինքն՝ ամեն օր 12 ժամ:

13. Ամենահորդ անձրևը, երբ մի րոպեում թափվել է 31,2 մմ տեղում, եղել է 1956 թվին, հուլիսի 4-ին, ԱՄՆ-ի Մոնտանա նահանգում:

14. Երկրի վրա ամենաբարձր մթնոլորտային ճնշումը՝ 1083,8 միլիբար, գրանցվել է ՍՍՀՄ-ի Ագատա քաղաքում:

*Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ*